# ՄԱՐԴԸ



# փայլում է աշխատանքով

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Շահումյանի անվան միջնակարգ դպրոց: Երրորդ դասարան: Դասն սկսվել է: Բոլորը գլուխները խոնարհած դասագրքին՝ սպասում են։

— Համիկ Պետրոսյան, — հնչում է դասարանով մեկ դասատուի ձայնը։

Համիկը ոտքի է կանգնում: Թեև գերազանցիկ է նա և օրվա դասերն էլ լավ պատրաստել է, բայց էլի սիրտը արագ է տրոփում. արդյոք գոհ կլինի՞ դասատուն։

Բայց, ա՜յ քեզ տարօրինակ բան... Դաս հարցնելու փոխարեն դասատուն մոտենում է Համիկին, բացում նրա առջև «Սովետական Հայաստան» թերթը և ասում.

— Կարդա բարձրաձայն այս հատվածը։

Եվ Համիկը կարդում է. «Խոսքը տրվում է 30—30ա կոմունիստական աշխատանքի ցեխի պետ ընկեր Ջեմլյակ Առաքելյանին։ Նա ջերմորեն պաշտպանում է նախորդ հռետորի առաջարկը և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Ազգությունների Սովետի դեպուտատության թեկնածու է առաջադրում նույն ցեխի ապարատավարների բրիգադավար Սուրեն Մարտիրոսի Պետրոսյանին»։

— Բավակա՞ն է, Համիկ, — ասում է դասատուն, — Ս. Մ. Կիրովի անվան գործարանի բազմահազարանոց կոլեկտիվի այդ ընտրյալը, որի անունը հնչում է մեր Հայրենիքի նշանավոր մարդկանց անունների հետ, քո հայրն է, չէ՞։

— Այո՛, — ասում է Համիկը և բերկրանքից շիկնած՝ գլուխը ցած է խոնարհում։

— Երեխանե՛ր, շնորհավորենք մեր Համիկին այդ ուրախության համար, — և դասատուն սեղմում է Համիկի ձեռքը, շոյում մազերը... Իսկ աշակերտները ուրախությունից ծափահարում են։

Երջանկության ժպիտը խաղում է Համիկի շիկնած դեմքին, ինչպես թիթեռը կակաչի վրա...

* * *

Գիշեր է։ Տանը բոլորը քնած են։ Ոտների ծայրերի վրա, զգույշ ներս է մտնում Սուրենը։ Գործարանից է գալիս, հոգնած է, բայց չի ուզում կնոջն արթնացնել, ուշ է... Իսկ իր քունը չի գալիս։ Հուզված է։ Նստում է սեղանի շուրջը, բացում օրվա թերթը և... աչքերի առջև պատկերանում է երեկվա հանդիսավոր ժողովը։

Ինքը բոլորովին անտեղյակ էր, ոչինչ չգիտեր։ Եվ ահա հանկարծ հնչում է դահլիճում իր անուն ազգանունը. իր աշխատանքային ընկերները մեծարում են իրեն, ողջ կոլեկտիվը ծափերի տարափ է տեղում: Նա ականջներին չի հավատում... Չէ՞ որ Կիրովի անվան հսկա գործարանում կան շատ անվանի, նշանավոր մարդիկ, աշխատանքային հերոսներ, ինժեներներ...

Բայց ահա այդ նշանավոր մարդկանցից մեկը՝ Սինթետիկ կաուչուկի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի ֆիլիալի ավագ գիտական աշխատակից Էմմա Հովհաննիսյանը ջերմորեն պաշտպանում է իր թեկնածությունը.

— Սուրեն Պետրոսյանը մեկն է արտադրության այն աշխատողներից, որն իր անձնվեր աշխատանքով շատ բան է արել սինթետիկ կաուչուկի նոր տեսակների յուրացման, մասնավորապես «Նաիրիտի» թողարկ-

ՄԱՐՏ
№ 3 1962 Թ.

ՊԻՈՆԵՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
34-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



ման, դրանց որակի բարելավման համար։ Նա աշխատում է մեզ մոտ 1940 թվականից և այդ ժամանակամիջոցում իրեն դրսևորել է որպես համեստ, զգայուն ընկեր, արտադրության նորարար և վաստակել է ամբողջ կոլեկտիվի սերն ու հարգանքը...

Այդ օրը նրա կյանքի ամենաերջանիկ օրն էր։ Վերապրում է նա այդ բոլոր տպավորությունները, և քունը փախչում է աչքերից... Ծխում է ու խորհում...

Սեղանին դրված է փոքրիկ մի մոխրաման, որ պատկերում է ալիքի հետ վերև թռչող ձկանը։ Խեղճ ձուկը տենչում է գոնե մի պահ ջրից պոկվել, վեր սլանալ, բայց չի կարողանում... Կար ժամանակ, որ մարդն էլ այդպես կապված էր հողին, թևեր չուներ, իսկ հիմա սավառնում է տիեզերքում...

Ի՞նչը մարդուն թևեր տվեց, հասցրեց մինչև երկնային բարձունքները։ Աշխատանքը։ Աշխատանքը մարդուն և՛ թևեր է տալիս, և՛ ոգևորություն, և՛ փառք ու պատիվ, և՛ երջանկություն... Աշխատանքը մարդուն պարգևել է անսպառ գանձերով լի մի օվկիան, և այդ օվկիանից ահա մի կաթիլ էլ բաժին է ընկել Սուրենին։

* * *

Առավոտյան, երբ Համիկն արթնացավ, հայրն արդեն վեր էր կացել։ Նա ոգևորությամբ պատմեց հորը, թե ինչպես դպրոցում շնորհավորեցին իրեն, ապա հարցրեց.

— Հայրի՛կ, ընկերուհիներս հետաքրքրվում էին, թե դու ի՞նչ նշանավոր գործ ես կատարել, որ այդ մեծ գործարանից քեզ են առաջադրել դեպուտատության թեկնածու։

— Առանձնապես մեծ գործ չեմ արել, Համիկ ջան,— ասաց հայրը։ Ինչպես քեզ սիրում են ձեր դպրոցում նրա համար, որ դու գերազանցիկ ես, այդպես էլ ինձ սիրում ու հարգում են մեր կոլեկտիվում, որովհետև ես լավ եմ աշխատում, սիրով օգնում եմ իմ ընկերներին և իմ ուժերը չեմ խնայում Հայրենիքի բարօրության համար։

Դե, մարդն էլ, բալիկ, փայլում է իր գործով։



# ՀԱՆՑԱՆՔ

ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ

Իմ բազմաթիվ ուսուցիչներից երկու հոգի միայն դեռ մինչև այսօր ապրում են։ Այդ երկու ուսուցիչներից միայն մեկին ես հանդիպում եմ տարվա ընթացքում մի-երկու անգամ։ Ես ամբողջ սրտով ուրախանում եմ, երբ հանդիպում եմ նրան և կարող եմ պնդել, որ նա էլ է ուրախանում ինձ տեսնելիս։ Ամեն անգամ հանդիպելիս մենք կանգնում և խոսում ենք երկա՜ր-երկա՜ր... Դա Տիգրան Շահբազյանն է, Դիլիջանի որբանոցային դպրոցի իմ հայոց լեզվի դասատուն։

Իմ մյուս ապրող ուսուցիչը Եղիշե Թերլեմեզյանն է, իմ Վանի ավելի վաղ մանկության ուսուցիչը։ Նրա մասին ես կպատմեմ մի ուրիշ անգամ։ Այսօր ես ուզում եմ գրել իմ երկրորդ ուսուցչի՝ Տիգրան Շահբազյանի մասին. չէ՞ որ ես ասացի, որ նրան հաճախ եմ հանդիպում, տարվա ընթացքում մի-երկու անգամ։ Ասեմ, որ հիմա երբ հանդիպում ենք իրար, ոչ ոքի մտքով չի անցնում, որ մեզնից մեկը ուսուցիչ է, իսկ մյուսն աշակերտ։ Երկուսս էլ սպիտակել ենք, երկուսս էլ զինված ենք ակնոցներով, արհեստական ատամներով և ձեռնափայտերով... Այո, մարդիկ որքան մեծանում են, այնքան աննկատելի է դառնում տարիների տարբերությունը։

Ես ուզում եմ գրել, թե ինչ պատահեց, երբ դեռ չափազանց նկատելի էր տարիների տարբերությունը, այսինքն, երբ նա ուսուցիչ էր, իսկ ես՝ աշակերտ, և ես նրան ոչ թե Շահբազ էի ասում ինչպես հիմա, այլ պարոն Տիգրան...

Այդ 1916 թվականին էր։

Որբանոցում կայծակի արագությամբ լուր տարածվեց, որ մի քանի ընդունակ և լավ սովորող որբերի Երևան պիտի փոխադրեն Թեմական դպրոցում սովորելու համար։ Ես կորցրի քուն ու հանգիստ, իսկ եթե քնում էի, ապա երազում տեսնում էի միայն Երևան և Թեմական դպրոց։ Ի՞նչ չէր ներկայացնում իրենից այդ Երևան կոչվածը կամ Թեմական դպրոցը. երազում ես տեսնում էի երկու հարկանի տներ, այդ Երևանն էր, իսկ Թեմական դպրոցը... Երազում ես գնում էի, գնում ու չէի հասնում Թեմական դպրոց կոչված հրաշքին...

Մինչ այս, մինչ այն՝ ես հիվանդացա։ Օրերից մի օր, երբ ես տառապում էի բարձր ջերմությամբ և գլխացավով, զգացի, որ մեկը ձեռքը դրեց ճակատիս։ Ես աչքս բացեցի ու մահճակալիս մոտ տեսա պարոն Տիգրանին և գթության քույր օրիորդ Արփենիկին։

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Ժամանա՞կ գտար հիվանդանալու,— հարցրեց պարոն Տիգրանը տխուր և մտահոգ,— տաքությունըդ էլ բարձր է... Հիմա ի՞նչ անենք քեզ հետ։

— Շուտ կառողջանա, պարոն Տիգրան, շուտ կառողջանա, եթե մեզ լսի,— ասաց օրիորդ Արփենիկը՝ բազկերակս բռնելով,— բայց ահա վատ



է ուտում… Թանապուր ուզեց, պատրաստել տվի, չկերավ… ասում է՝ թանապուրը բրնձով չեն պատրաստում, համ էլ, ասում է, իմ տատը թանապուրի մեջ նարգիզ է գցում… ի՞նչ բան է նարգիզը…

Պարոն Տիգրանը ժպտաց տխուր ժպիտով:

— Այդպես չի կարելի,— ասաց նա,—պետք է ուտես, թե չէ, բոլորովին կթուլանաս: Առողջացի՛ր:

Ու գնաց: Գնաց ու ինձ թողեց իմ տաքության ու զառանցանքների հետ, իսկ ես, ինչպես հետո պատմեց գթության քույր օրիորդ Արփենիկը, զառանցել եմ միայն Երևանի և Թեմական դպրոցի մասին: Իմ զառանցանքների մեջ ես քննություն եմ տվել աշխարհագրությունից և պնդել եմ, որ Սումատրա ու Ճավա կղզիները գտնվում են Վանա ծովում, իսկ Աղթամարը Խաղաղ Օվկիանոսում…

Ես առողջացա և առաջին բանը, որ լսեցի որբանոցում, այդ այն էր, որ տղաները երկու օրից գնում են Երևան Թեմական դպրոց սովորելու, և կազմված ցուցակում ես չկամ՝ հիվանդ լինելու պատճառով. գնում էին Հայաստանը, Դանիելը, Գևորգը, Հարությունը… Ես չկամ, ես հիվանդանոցից երկու օր ուշ դուրս եկա…

-- Հիմա ի՞նչ անեմ քեզ հետ, —նորից մտահոգվեց պարոն Տիգրանը ձեռքը դնելով իմ ուսին,-- ի՞նչ անհարմար ժամանակ հիվանդացար:

Ճաշից հետո, երբ տղաները հավաքված էին սերտարանում և պարապողներին չխանգարելու համար շշուկով խոսում էին միայն Երևանի և Թեմական դպրոցի մասին, Մայրապետը մոտեցավ ինձ և ականջիս ասաց.

— Պարոն Տիգրանը կանչում է…

Ներս մտա պարոն Տիգրանի սենյակը բավական հուզված: Կամ լավ բան վճռված էր ինձ լսել, կամ վատ. երկու դեպքում էլ հուզվելուց չէր կարելի խուսափել: Նա պարզեց ինձ մի ծրար և ասաց.

— Այս նամակը կտանես պարոն Այվազյանին: Ոչ ոքի չես տա, կտաս միայն պարոն Այվազյանին և կխնդրես, որ պատասխանի: Նամակը չբանաս և չկարդաս: Գնա:

Ես ծրարը ձեռքիս դուրս եկա: Պարոն Տիգրան Այվազյանը մեր որբանոցի խնամակալն էր: Ուրիշ դեպքում ես չէի մտածի ոչ նամակ բանալու, ոչ էլ կարդալու մասին: Բայց ահա այս անգամ, երբ դուրս եկա որբանոցի բակից և քայլերս ուղղեցի դեպի պարոն Այվազյանի տունը, մտքովս անցավ մի բան. ի՞նչ է գրված նամակում և ինչու՞ ինձ արգելեց բանալ ու կարդալ:

Ծրարի վրա գրված էր. «Պարոն Տիգրան Այվազյանին», իսկ ավելի վար, աջ անկյունում՝ «Տիգրան Շահբազից»: Բավական հեռանալով որբանոցից և մոտենալով պարոն Տիգրան Այվազյանի բնակարանին, ես մի գյուտ էլ արի. ծրարը փակված չէր: Փողոցի անկյունում ես ծրարից հանեցի նամակը. դա մի քառածալ թուղթ էր, որն սկսվում էր «Հարգելի պարոն Այվազյան» և վերջանում «հարգանքներով՝ Տիգրան Շահբազ»-ով: Այնտեղ գրված էր, որ հիվանդության պատճառով «Գուրգեն Աճեմյանը չմտավ Երևան ուղարկվողների ցուցակում», խնդրում է «ուղարկել նրան ընդհանուր կարգով» և ավելացնում. «ախտոս տղա է…»

«Ախտոս տղա է…»

Այս բառերը, որոնք վերջանում էին երեք կետերով(…) վերածվեցին արցունքների, և ես հուզմունքից և ուրախությունից արագացրի քայլերս: Քայլում էի ու լալիս, միաժամանակ մտածում, ր հանցանք գործեցի, որ չպետք է բանայի ու կարդայի նամակը և լալիս էի, որ ես «ախտոս տղա եմ…»

Պարոն Այվազյանի դուռը բացեց ըստ երևույթին նրա ծառան, կարճ, սև բեղերով մի երիտասարդ:

— Ի՞նչ կա,—հարցրեց նա:



— Պարոն Այվազյանին... նամակ ...—հասկացրի ես, արցունքի վերջին կաթիլը կուլ տալով։

— Տուր,— ասաց նա պարզելով ձեռքը։

— Չեմ կարող... իրե՞ն պիտի տամ,— ընդդիմացա ես։

— Է՜... դժգոհեց ծառան,—ախր քնած է։

— Կսպասեմ,— համառեցի ես։

Նա նայեց ինձ ոտից մինչև գլուխ և դուռը կիսով ծածկեց։

Ծածկեց, չփակեց։ Ըստ երևույթին նա կիսով չափ հասկացավ, որ ես «ախպոր տղա եմ...»

Շատ չանցած դուռը բացվեց, և իմ դեմ կանգնեց նույն ինքը, պարոն Տիգրան Այվազյանը։ Ակնոցավոր էր նա, մի թեթև չաղ։

Ես անխոս պարզեցի նրան պարոն Տիգրանի նամակը։

— Կարդալ գիտե՞ս,— հարցրեց նա ինձ։

— Այո՛,— պատասխանեցի ես։

— Ծրարը դո՞ւ ես բացել,—շարունակեց նա հարցաքննությունը։

— Ո՛չ,— պատասխանեցի։

Նա արագ կարդաց նամակը և ասաց.

— Պարոն Շահրազին կասես՝ լավ, համաձայն եմ։

Ես թևեր առած թռա որբանոց։ Պարոն Տիգրանը պատշգամբում նստած՝ «Հորիզոն» էր կարդում։

— Ասաց՝ լավ, համաձայն եմ,— շնչակտուր հաղորդեցի ես։

— Դու... իմ նամակը կարդացի՞ր,— հարցրեց պարոն Տիգրանը թեթև ժպտալով և կկոցելով մի աչքը։

— Ո՛չ,— ստեցի ես։

Երեկոյան պարոն Տիգրանը ողջերթ մաղթեց մեկնողներին և հայտարարեց, որ երջանիկների ցուցակում ես էլ կամ։ Պարոն Տիգրանը մի շարք կենցաղային խրատներ տվեց և, ի միջի այլոց, ասաց.

— Հանցանք է կարդալ ուրիշի նամակը։ Մի՛ կարդար ձեզ չպատկանող նամակը, եթե մինչև անգամ նամակը բաց լինի...

Այս անգամ նա չնայեց իմ կողմը, եթե նայեր, երևի կնկատեր, որ ես կարմրել եմ մինչև ականջներս...

* * *

... Ամեն անգամ, երբ հանդիպում էի իմ նախկին ուսուցիչ Տիգրան Շահրազին, ես հիշում էի իմ գործած հանցանքը, ուզում էի օր-ծերության խոստովանել, չէի համարձակվում։

Բայց ահա մի քանի օր առաջ մենք նորից հանդիպեցինք, երկուսս էլ սպիտակած, երկուսս էլ ձեռնափայտով, ակնոցներով և արհեստական ատամներով։ Հիմա մեզ վրա նայողը չի էլ կարող մտածել, որ մեզնից մեկն ուսուցիչ է, իսկ մյուսն՝ աշակերտ։

— Ինչ շուտ անցավ ժամանակը,—ասացի ես, — հիշու՞մ ես, քիչ էր մնացել ես դուրս մնայի ցուցակից...

— Հիշում եմ,—ժպտաց Շահրազը,—ես քո միջոցով մի նամակ ուղարկեցի Տիգրան Այվազյանին...

— Եվ ես ճանապարհին կարդացի քո գրած նամակը, — համարյա գոռացի ես, ձեռնափայտս թափելով մայթին,— դու նամակում իմ մասին գրել էիր՝ «ախպոր տղա է...»

— Իսկապե՞ս, — ժպտաց իմ նախկին ուսուցիչը,— ես այդ քո գործած հանցանքի համար այսօր քեզ ճաշից կզրկեի, բայց ներում եմ... ախպոր տղա ես...

Նա չնայեց իմ դեմքին, եթե նայեր, չէր կարող չնկատել, որ ես կարմրեցի...

Մինչև ականջներս։

# ԻՄ ԼԱՎ ՄԱՆՈՒԿՆԵՐ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Հորիզոններն են բացվում ոսկերիզ,
Հավքերն են կանչում բերկրանքի ճիչով.
Գարունն է քայլում դեպի կոմունիզմ
Եվ թևավորում ձեզ ամեն ինչով։
Ճախրանք է տալիս ձեր մանուկ սրտին
Աղմուկով լեցուն ամեն առավոտ,
Դուք ձեր երազով գիշերում մթին
Գալիքի դուռն եք բացում արևոտ։
Լցված եք մեր նոր երկնային գյուտով,
Որին դարերը մնացին անհաս,
Դուք ձեր մտքերում դառնում եք Տիտով,
Ժպտում եք հպարտ ու թռչում եք Մարս։
Լավ է, մանուկներ, երազել այնքան,
Լավ երազանքը մի թևն է կյանքի,
Բայց պետք է կյանքում իմանալ մի բան,
Որ չկա ոչինչ առանց տքնանքի։
Դուք գործեք պիտի կյանքում անխռով,
Դառնաք շինարար, հնձվոր, այգեպան
Եվ առատությամբ ու նոր խոհերով
Բացեք այդ հրաշք օրերի ճամփան։
Դուք գանձեր պիտի մայր հողից հանեք,
Այգի դարձնեք անտառները հին,
Որ կոմունիզմի դրոշը տանեք
Հեռու-հեռավոր մոլորակներին։




*ԱՂԱՎՆԻ*

*Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

Չուչիկի մասին եմ ուզում պատմել: Այն Չուչիկի, որ մի ոտքից կաղում է, իսկ մնացած երեքով կարողանում է ցատկել երկրորդ հարկի իրենց պատշգամբից, ծառը մագլցել ու, եթե ուզենա, ֆուտբոլ էլ կխաղա:

Եվ, իհարկե, ֆուտբոլի մեր բակային թիմը նրան շատ սիրով կընդուներ իր կազմի մեջ ու դեռ դարպասապահ էլ կդարձներ, քանի որ Չուչիկի նման գնդակ որսացող մեկ ուրիշը չես ճարի, բայց... խնդրում եմ չզարմանաք, մենք բոլորս, սկսած ինձանով, վերջացրած Տաճատով, Չուչիկից ամաչում ենք: Այնպես ենք ամաչում, որ հնար լինի, մկան ծակն էլ կմտնենք, նրա աչքին չերևալու համար:

Իսկ Չուչիկը... ա՜յ թե անպիտանն է, հա՜: Ոտքի մեկը կաղ, բոյն այնքան կարճ, որ գետնի երեսին հազիվ է երևում, բայց մեզ տեսնելիս ձգվում է, հպարտ տեսք ընդունում և բրդոտ գլուխը բարձր պահած, այնպես է անցնում մեր կողքով, որ կարծես մենք աշխարհում գոյություն էլ չունենք:

Մենք շնչներս պահած հետևում ենք, մինչև նա սանդուղքներից բարձրանում է, մոտենում իրենց դռանն ու ծմրկոտում: Այդ նշանակում է, որ քեռի Գարեգինը դուռը կբացի, Չուչիկին ներս կընդունի ու վերջ: Եվ հենց որ լսվում է նրանց դռան ճռինչը, մենք ազատ շունչ ենք քաշում:

— Տղե՛րք, Չուչոյից պրծանք...

Դե, մենք լավ գիտենք, որ Չուչոյից պրծնելը այնքան էլ հեշտ չէ, որ նա էլի շատ անգամներ մեզ պիտի ամոթահար անի, բայց սխր խա՛ղն է մնում, մեր ֆուտբոլը: Ու մենք աղմուկով վազում ենք բակի կենտրոնը:

Տաճատն իբրև դարպասապահ, իր տեղն է գրավում, ես, իբրև աջ եզրային հարձակվող, նետվում եմ դեպի գնդակը, մյուսները՝ հա՜յ, հու՜յ, ու մեկ էլ ով ինչպես կար, այնպես էլ մեխվում է իր տեղում: Վահրամը՝ սուլիչը բերանին, ես՝ վիզս առաջ ձգած, Տաճատը՝ չորեքթաթ փռված գետնին, իսկ գնդակը՝ ցանցի մեջ... Ո՞վ խփեց գոլը և ինչպե՞ս եղավ, որ Տաճատը գնդակը որսալու փոխարեն գետնին փռվեց ու շփոթված շուրջն է նայում:

Չեմ կարող պարծենալ, որովհետև այդ մի գոլը իմ շնորհքը չէր, ոչ էլ Վահրամի շնորհքն էր, ոչ էլ մեր թիմից որևէ մեկի... Ծիծաղելի է, չէ՞, գոլ է խփվել, բայց ոչ ոք չի կարող այդ քաջությունը իրեն վերագրել: Դե, ի՞նչ արած, ծիծաղեցեք, իսկ մեր սրտից արյուն է գնում, մենք ծիծաղել էլ չենք կարող, քանի որ... խնդրում եմ չզարմանաք, գոլ խփողն էլ Չուչիկն էր, ծիծաղողն էլ նա է:

Այո, հապա ի՞նչ էիք կարծում, Չուչիկը, մեր բակի, գուցե և մեր ամբողջ թաղի այդ ամենապստլիկ, թիզ ու կես շնիկը ծիծաղում է, այն էլ ում չէ, ում՝ մեզ նման կտրիճ տղաների վրա, այն ժամանակ, երբ թաղի բոլոր շներն ու կատուները, երբեմն էլ հավերն ու սագերը մեր հոտն առնելիս էլ գունատվում են:

Բայց չէ՞ որ շները չեն ծիծաղում, կասեք դուք, և վերջապես Ջուչիկն ախր ներս էր մտել, գնացել էր իրենց տուն:

Եվ հենց այդ է, որ դուք չգիտեք, չեք ճանաչում Ջուչիկին, ծանոթ չեք նրա խորամանկություններին ու զարմանում եք: Իսկ մենք քիչ առաջ արդեն գիտեինք, թե այդ անիծվածը ինչու ներս գնաց, ու չսխալվեցինք:

Մի խոսքով, Ջուչիկը մի դռնից ներս մտավ, մյուսով ելավ պատշգամբ, մեր խաղի ամենաառաք պահին մի հայացք գցեց մեզ վրա, ու ստացվեց այն, ինչ դուք տեսաք՝ գոլ շփոթմունքից...

Եվ ահա նա նստած է իրենց պատշգամբում, ու մենք ներքևից, նա՝ վերևից իրար ենք նայում: Մենք նայում ենք էլի շփոթված ու ամոթահար, և յուրաքանչյուրս իր մտքում նույն այն խոսքն է կրկնում, որ եթե բարձրաձայն արտասանվի, դուրս կգա այսպիսի մի բան. «Դե լա՜վ էլի, Ջուչո՛ ջան, մի բան էր, եղավ, ների՛ր ու մոռացի՛ր...» Իսկ Ջուչոն... Նրա հայացքի մեջ մի քիչ արհամարհանք կա, մի քիչ խղճահարություն ու մի քիչ էլ հեգնանք: Եվ այդ բոլորը գումարվելով դառնում է Ջուչոյի ծիծաղը ու մեզ այսպես մեխում է տեղերում:

Նայում է Ջուչիկն իր բարձունքից, նայում է սիրտն ուզածի չափ, մեկ էլ կամացուկ ճռնչում է պատշգամբի վրա բացվող դուռը, և Ջուչիկի կողքին հայտնվում է նրա անբաժան ընկերուհին՝ Փափլիկը:

Այս Փափլիկի հայտնվելը մեզ ավելի է շփոթեցնում, քանի որ արդեն գիտենք՝ նա ինչ էլ անի, մեր ջգրու կանի: Մեր ջգրու, նա կոտրատվելով ու հազար նազուտուզով՝ գալիս պպզում է Ջուչիկի կողքին, ուսով հենվում է նրան ու, կարծես պարծենալով, որ նրա պաշտպանությամբ ինքը միանգամայն ապահով է, կանաչ աչքերը ճպճպացնելով, սկսում է իր դունչ ու մռութը լպստել:

Լպստում է, լպստում, կոկում, հարդարում ինքն իրեն, հետո էլ դառնում է Ջուչիկին, թաթիկներով նրա փուշոտ պոչն է քաշքշում, ականջները կծոտում, ու երկուսով սկսում են գզուգ անել, ոչ մի կարևորություն չտալով այն բանին, որ մենք ներկա ենք ու իրենց ենք նայում:

Ահա այսպես: Եվ սա մի անգամ չէ, երկու չէ, այլ այն օրվանից, երբ...

Մի խոսքով, դա այսպես եղավ. մեր շենքում մի ազատ սենյակ կար, ու այնտեղ բնակվելու եկավ քեռի Գարեգինը: Եկավ նա՝ յուրաքանչյուր ձեռքին մի ճամպրուկ և ուրիշ ոչինչ: Արդեն պարզ էր՝ քեռի Գարեգինը մեր հասակի երեխաներ չուներ, ու մենք այլևս չհետաքրքրվեցինք նրանով: Իսկ մեր մայրիկներն, ընդհակառակը, սկսեցին իրար հաղորդել, որ նոր կենվորը ո՛չ կին ունի, ո՛չ երեխա, ունեցած իրերն



էլ՝ ընդամենը երկու ճամպրուկ: Հաղորդում էին ու կարծիքներ փոխանակում, թե՝ լա՞վ է, թե՞ լավ չէ, որ արդեն տարիքն առած, մազ-մորուքը չալ ընկած տղամարդը կին չունի, դեռ ոչինչ, իրե՜ր էլ չունի: Իհարկե, մայրիկներից ոչ մեկը իմ կարծիքը չհարցրեց, բայց ես մտքումս որոշեցի, որ եթե քեռի Գարեգինը երեխաներ ունենար, ես ամեն օր նրանց տուն կգնայի խաղալու, որովհետև շատ իրեր ունենալն էլ մի բան չէ: Այ, օրինակ, իմ մայրիկը մեր երկու սենյակն էլ լցրել է զանազան շքեղ ու շողշողուն կահկարասիներով, թանկարժեք զարդասափորնելով, բուկուտեղներով, ու հենց որ ես շարժվում եմ, իսկույն զգուշացնում է. «Ռուբիկ, կամաց, զարդասեղանին չկպչես, հագուստի պահարանը չշանգռես, չինական սափորս չգլորես...» Դուրս է գալիս, որ բնակարանը զանազան իրեր լցնելու համար է ու ոչ թե բնակվելու... Այսինքն, ես այս մասին ասում եմ, ոչ թե մայրիկից գանգատվելով, այլ իմ կարծիքն եմ հայտնում, որովհետև հայրիկը միշտ ասում է, որ մարդ պիտի իր սեփական կարծիքն ունենա և այն չթաքցնի ոչ ոքից:

Դե լավ, այդ թողնենք: Ուրեմն քեռի Գարեգինը երեխաներ չուներ, կին չուներ և ուներ ընդամենը երկու ճամպրուկ: Բայց հետևյալ օրը, երբ մենք բակում թունդ տարված էինք ֆուտբոլով, մեկ էլ տեսնենք, որ նրա պատշգամբում նստած են մի շնիկ ու մի կատու: Բոլորս միասին տեսանք, բայց իմ զար-

մանքն այնքան շատ էր, որ բոլորից առաջ կանչեցի.

— Տղե՛րք, մի՛ տեսե՛ք՝ շունն ու կատուն իրար կողքի...

— Չի՛ կարող պատահել,— ինձ ձեռ առավ Տաճատը:

— Աչքի՛դ է երևացել,— հռհռաց Վահրամը:

Մյուսներն էլ ծիծաղեցին ու հանկարծ բոլորս լռեցանք:

— Տղե՛րք, բայց ճիշտ որ մեկը շուն է, մյուսը կատու ու իրար են լպստում,— կարծես տեսածին չհավատալով ասաց լողլող Լյուդվիգը:

Արդեն ամեն ինչ պարզ էր՝ մի շուն ու մի կատու իրար էին լպստում, գզում տալիս ու զվարճանում: Պարզ էր, բայց անհավատալի, շունն ու կատուն ինչպե՞ս կարող էին այդքան մտերիմ լինել: Եվ Տաճատն այդպես էլ ասաց.

— Պարզ է արդեն, որ դրանք իսկական շուն ու կատու չեն, այլ՝ ինչ-որ սարքեր, մեխանիզմ: Իսկական շունը չի կարող թույլ տալ, որ կատվի նման անհավատարիմ արարածը իր պոչն ու ականջը կծոտի:

— Դե որ կասկածում եք, եկեք ստուգենք,— ասաց Լյուդվիգն ու գրպանից հանեց իր ճղապարսատիկը:
— Ես երկուսին էլ մի-մի հատ կհասցնեմ, որը որ ձայն հանեց, կենդանի արարած է, իսկ մյուսը՝ սարք:

Նա դեռ քար էր որոնում պարսատիկի մեջ դնելու, մեկ էլ կատուն մոտեցավ պատշգամբին ու թռավ բակ:

— Վա՜յ, կատու՛ է, իսկակա՜ն կատու,— աղմկեցինք մենք, և նա մեր հարայհրոցից շփոթված՝ վազեց ու մագլցեց դիմացի ծառը:

— Մեկ է, ես պիտի ստուգեմ՝ կատու՞ ես, թե՞ կատու չես,— ոգևորվեց Լյուդվիգն ու սկսեց նշան բռնել խեղճ փիսիկին: Նա խփում էր, մենք աղմկում էինք ու բոլորովին մոռացել էինք այն մյուսի՝ շան մասին: Եվ հանկարծ այն տեսանք, որ շնիկը կատաղի հաչոցով իրեն ցած նետեց պատշգամբից, մի երկու անգամ գլուխկոնծի տվեց, ցավագին կլանչեց ու, կաղեկաղ, վայրացած գոմռալով, վազեց դեպի ծառը: Փոքրիկ, գետնի երեսին հազիվ երևացող մի շնիկ էր, բայց մենք վախեցանք ու հեռու փախանք: Նա մոտեցավ ծառին, ոտքի ցավից մի երկու անգամ նորից կլանչեց և հետո սկսեց վերև նայելով, քնքուշ ու համոզկեր ձայնով ծմրկոտալ, կարծես ասելիս լիներ, թե. «Մի՛ վախենա, ցա՛ծ արի, ես այստեղ եմ...» Փիսոն ծառի ամենավերին մի բարալիկ ճյուղի վրա էր ու նրա համար դժվար էր անմիջապես ներքև ցատկել: Եվ ահա նա սկսեց իջնել դանդաղ, զգուշությամբ, ոտքը դնելուց առաջ մի քանի անգամ ստուգելով հերթական ճյուղը: Իջավ, իջավ, հասավ վերջին ճյուղին, ու երևի զգուշության համար, պպզեց այնտեղ: Ու նրանց մեջ սկսվեց մի շատ հետաքրքիր մնջախոսություն: Շնիկը ոտքի ցավից մղկտալով, աղաչում է նրան, սիրտ տալիս, համոզում, որ ոչ մի վտանգ չկա, հարկավոր է իջնել, իսկ փիսոն մեջքն է գալարում, աչքերը կկոցելով, զգուշությամբ շուրջն է նայում ու մնում նստած, իբր թե. «Դեռ սպասենք, տեսնենք վերջն ինչ է լինելու»:

Վերջն այն եղավ, որ բակ մտավ քեռի Գարեգինը: Փիսոն մեզնից շուտ էր նկատել նրան և իսկույն ցած թռավ, առաջ վազեց, քծնվեց նրա ոտքերին ու առաջնորդեց շնիկի մոտ:

—Խե՜ղճ իմ Զուչիկ, իսկ ես ու դու կարծում էինք, թե այս մեր նոր հարևանները լավ տղաներ են,— ասաց քեռի Գարեգինը, գրկելով Զուչիկին:

— Ազնիվ խոսք, մենք մեղք չունենք,— փնթփնթաց Լյուդվիգը,— այդ ձեր Զուչոն էր, որ թռավ պատշգամբից ու...

— Ու օգնության հասավ Փափլիկին, որովհետև դուք նրան հալածել ու քշել էիք ծառի կատարը,— լրացրեց քեռի Գարեգինը, ու մենք ամոթից գլուխներս կախեցինք:

Զուչիկի ոտքը ջարդվել էր, ու մի առժամանակ նա պատշգամբում չէր երևում, չէինք տեսնում նաև Փափլիկին: Տղաները կատակում էին, թե փիսոն սուգ է պահում: Կատակեցինք, կատակեցինք ու կարծես թե մոռացանք: Բայց երբ Զուչիկի ոտքը բուժվեց, ու նա առաջին անգամ երևաց իրենց պատշգամբում, մենք բոլորս, առանց իրար հետ կարծիքներ փոխանակելու, շառագունեցինք ու ամոթահար կախեցինք մեր գլուխները:

Այդ օրվանից ահա, որտեղ է տեսնենք Զուչոյին, ամաչում ենք, շփոթվում: Իսկ նա ձգվում է, հպարտ տեսք ընդունում և այնպես է անցնում մեր կողքով, որ կարծես մենք աշխարհում գոյություն էլ չունենք:

Դե, այսքանից հետո կարող եք արդեն զարմանալ, որովհետև, իսկապես, շատ զարմանալի է Զուչիկի ու Փափլիկի բարեկամությունը:





## ԳԱՐՆԱՆԱՅԻՆ

ՎԱԶԳԵՆ ԱԹԱԲԵԿՅԱՆ

Ձյունն է կարոտով հեռանում գյուղից,
Հանդերի ճամփին մի թարմ սայլուղի
Ձգվում է խաղաղ.
Մշուշն է ձորից փեշերն հավաքում,
Տրակտորն արդեն արտերն է հերկում
Առավոտյան վաղ։

Անձրևից հետո սարերի ուսին
Ծիածան ձգվեց գույներով լույսի՝
Երկնքի ֆոնին.
Մի վտակ ուզեց ժայռն ի վար իջնի,
Ձեռքերը պարզեց, որ նրան բռնի
Ծաղկածուփ հոնին։

Իմ սիրտն է անհուն հրճվանքով լցվել,
Ձնծաղիկներն են լանջերին բացվել
Ցողոտ աչքերով։
Քույրս բանջար է բերում մեզ համար,
Գարո՛ւն, նրա հետ մեր տունը մտար
Հողոտ ձեռքերով։

Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Բակի կանանցից մեկը բահի կոթով հարվածել էր այդ շանը։ Շունը կլանչել էր, պոչն իրեն քաշած՝ կաղալով դուրս էր փախել բակից։

Այնուհետև նրան չէին տեսնում։

Չէին տեսնում բակի հեռավոր, կիսաքանդ պատի մոտ, ուր նա սովոր էր պառկել արևի տակ, չէին տեսնում ջրծորակի մոտ, ուր նա պառկում էր գլուխն առջևի թաթերին դրած և ասես հասկացող աչքերով հետևում էր դույլը հոսող ջրի տակ թողած կանանց զրույցին։ Բակում այլևս չէին հայտնվում հարևան բակերի շները, որոնք, ինչպես կանայք էին ասում, գալիս էին այդ շան համար։ Եվ առավոտ ծեգին այլևս չէր լսվում նրա առույգ, բայց անհամարձակ հաչոցը ձու կամ լավաշ ծախող կանանց վրա։

Հին բակում մոռացել էին այդ շանը...

Մի օր բակին հարող տներից մեկի բարձր տանիքին իջավ մի աղավնի։ Երկրորդ հարկում բնակվող գինեգործի կինը տանը չէր, և նրա տղան իրենց պատշգամբի սյան վրայով մագլցեց կտուրը, մագլցեց հարևան տան որմի վրայով, եկավ տանիքը։ Նա չորեքթաթ առաջացավ դեպի աղավնին։ Թռչունը տագնապով շարժեց գլուխը, լարվեց։ Տղան անշարժացավ։ Թռչունը թռավ, բարձրացավ, կորավ ամպերում։ Տղան կկոցեց աչքերը։ Տանիքի տակից նա լսեց ինչ-որ ձայն։ «Կատուներն են»— մտածեց նա։

Ձայնը կրկնվեց. դա թույլ հեծկլտոց էր, որ ավելի շուտ կարող էր արձակել մարդը, քան որևէ կենդանի։ Տանիքի ու կտուրի նեղլիկ արանքից տղան ներս սողոսկեց։ Նա անմիջապես զգաց, որ իրենից քիչ հեռու կիսախավարում շարժվում է ինչ-որ արարած։ Նա վարանոտ հապաղեց։ Լսվեց մռնչյուն, մթության մեջ ինչ-որ մեկը շարժվեց. կտուրի հողի վրա շարժվեցին ինչ-որ մանր—մանրը, նվնվացող գնդեր։

Տանիքի ու կտուրի նեղ արանքից ցրված պղտոր լույսի մեջ տղան նշմարեց շան նիհար, ցցուն կողոսկրերը, ճակատի սև, խոշոր խալը և թույլ կրակի պես կարմիր աչքերը։ Երեք ձագերը նվնվոցով սողում էին դեպի շունը։ Տղան չորեքթաթ անշարժացավ։ Կիսամութում իրեն մոտիկ աչքերը փայլեցին, երևացին սպիտակ ժանիքները, շունը սպառնագին մռռաց, ցնցվեց. կարմիր աչքերի զգուշավոր հայացքը անթարթ հառված էր տղայի ձեռքին։ Տղան գիտեր, որ այդպիսի մի ձեռք բահի կոթով հարվածել էր այդ շանը։ Եվ շանը երևի թվում էր, որ, ուր որ է, այդ ձեռքերը կշարժվեն, և ինքը կզգա սուր ցավ կամ կլսի ձագի աղիողորմ նվնվոցը։

— Մի՛ վախեցիր։

Տղան չգիտեր ինչ աներ։ Կարող էր հետ դառնալ։ Բայց չէր ցանկանում հեռանալ այդպես, առանց

# ՏԱՆԻՔԻ ՏԱԿ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

հավատացնելու, որ շունը կարող է չվախենալ իրենից:

— Մի՛ վախենա,— կրկնեց նա:

Շունը շարունակում էր մնալ: Տղան փորձեց մոտենալ, բայց նրա առջև նորից սպիտակին տվին երկար ժանիքները: Շունը հյուծված էր և հազիվ էր կարողանում ցնցվել: Նինվացող մազերը կծկվեցին նրա փորի տակ: Տղան էլ սողաց: Շունը գլուխը դրեց թաթերին, դունչը երկարեց և կարմրած աչքերով անթարթ նայում էր նրան:

— Եւ էլի՛ կգամ:

Շունը նայում էր զարմացած, բայց ոչ չարացած: Երևի նրան տարօրինակ էր թվում, որ մարդը մոտեցել էր իրեն և հիմա հեռանում էր առանց ցավ պատճառելու:

Մայրը դեռ չէր եկել: Տղան պահարանից վերցրեց իր նախաճաշը, դրեց ծոցն ու գրպանը: Այս անգամ նա իրենց պատշգամբի սյունով չբարձրացավ կտուր: Մայրը կարող էր գալ, տեսնել: Բակի հեռավոր պատը քանդված էր: Այդտեղից կարելի էր ելնել այդ պատի վրա, բարձրանալ հարևան կտուրը և տան որմով մագլցել թիթեղապատ տանիքով կտուրը:

Բակում ոչ ոք չկար: Նա ձգվեց, կառչեց քարերից, լարվեց, բարձրացրեց ոտքերը, ելավ պատի վրա: Նայեց վար. կռացավ, կպավ պատին: Նա չէր կարծում, թե պատն այդքան բարձր է. թվում էր, եւ մի քայլ, և ինքը կկորցնի հավասարակշռությունը: Նա հասկացավ, որ պիտի ցած չնայի: Կառչելով ցցուն քարերից, նա ծնկների վրա չորեքթաթ, զգույշ առաջացավ. նա ջանում էր չնայել ցած, բայց չգիտես ինչու միշտ հայացքի առջև էին պատի տակ թափված քարերը: Մի պահ նրան թվաց, թե ինքն ընկնում է, կծկվեց: Նայեց՝ առաջ, հիշեց ծոցի հացը, գրպանի երշիկը: Այդ զբաղեցրեց նրա միտքը, ուշքը մի պահ կտրեց պատի տակ թափված քարերից. այդ բավական եղավ, որպեսզի նա ելնի ոտքի, համարյա վազելով անցներ այն մի քանի քայլը, որ իրեն բաժանում էին դիմացի կտուրից: Կանգ չառավ, վազեց, մագլցեց դիմացի պատով, ելավ տանիքը և նեղ արանքից սողաց ներս:

Նա անմիջապես նկատեց շանը: Ցածր տանիքի տակ չորեքթաթ առաջ գնալով՝ նա մոտեցավ: Շունը ցնցվեց, վրա եկավ, կատաղի փնչոցով սուր ատամները ցցեց նրա դեմքի մոտ: Տղան դեմքը հպեց հողին, ձեռքերով ծածկեց գլուխը: Շունը փնչացրեց ու հանկարծ հեռ փախավ: Տղան բարձրացրեց դեմքը.

— Ես քեզ հաց եմ բերել... նաև երշիկ:

Նա շտապով ձեռքը տարավ գրպանը, հանեց փաթեթը, բացեց:

— Հիմա դու կհավատաս ինձ:

Նա բացեց փաթեթը, ծոցից հանեց երշիկը, դրեց փաթեթի կողքին:

— Տեսա՞ր:

Նա շարունակում էր խոսել մեղմ, շոյող: Շունը առաջ պարզեց դունչը, աղմուկով հոտոտեց օդը:

— Այո՛, երշիկ ու հաց:

Շունը շարժեց պոչը: Տղան հիմա ցանկացավ նրա հետ լինել ավելի մտերիմ:

— Ես քեզ կանվանեմ Խալոտ: Խալո՛տ. մո՛տ արի:

Շունը անշարժ էր:

— Չե՞ս հավատում: Լավ:

Նա վերցրեց երշիկն ու հացը, առաջացավ: Շունը երկարեց վիզը, թաթերի վրա ձգվեց դեպի նա: Տղան պարզեց ձեռքերը և բերածը դրեց շան դնչի մոտ:

— Կե՛ր:

Նա ձեռքը հետ քաշեց: Շունը մի փոքր սպասեց, ուտելիքն առավ թաթերի տակ և, դունչը համարյա հողի մեջ խրած՝ հոշոտեց երշիկն ու հացը: Նա ամբողջ մարմնով ցնցվում էր: Տղան զարմացած էր: Նա առաջին անգամ էր տեսնում, որ մի արարած կարող է լինել այդ աստիճանի քաղցած: Շան մռութի տակից թռավ հացի խոշոր մի կտոր, ընկավ քիչ հեռու: Տղան պարզեց ձեռքը, որպեսզի այդ կտորը գցի նրա մոտ: Շունը հանկարծ ցատկեց, փնչացրեց կատաղի: Տղան իր դեմքի մոտ տեսավ մազերը ցից կանգնած կատաղի երախը և դեմքը նորից հպեց հողին: Շունը շեղվեց, թռցրեց պատառն ու քաշվեց ցածրիկ անկյունը: Ձագերը նվնվալով քաշ եկան դեպի մայրը: Տղան չէր վախեցել: Նա միայն տխուր էր:

— Ուրեմն դու ինձ չե՞ս հավատում: Ոչի՞նչ, դու ինձ դեռ կվստահես...

Մայրը տանն էր: Տղայի շորերը անկարգ էին, փոշոտ. կոշիկները, ձեռքերը, նույնիսկ երեսն ու մազերը հողոտ:

— Դու նախաճաշե՞լ ես:

Տղան կանգնել էր մոր առջև: Նա միայն հիմա



հասկացավ, որ մայրը պիտի հանդիմաներ իրեն։

— Ես կերա երշիկ ու հաց։

— Իսկ սա ի՞նչ է։

Մայրը ապտակեց։ Տղան ձեռքով բռնեց երեսը։ Մայրը քաշեց տղայի ականջը.

— Սա ի՞նչ է, ես երեկ եմ լվացել, մաքուր հագցրել եմ, դու չե՞ս մտածում, որ ես չարչարվում եմ, դու իմ մասին չե՞ս մտածում։

Մորը տարօրինակ թվաց, որ տղան չէր լալիս։

— Կռվե՞լ ես։

Տղան բացասաբար շարժեց գլուխը։

— Ընկե՞լ ես։

— Ո՛չ։

— Իսկ ի՞նչ է եղել։

Տղան կպատմեր. բայց այդ ամենից հետո պե՞տք էր պատմել։

Մայրն զգաց, որ ճիշտ չէր վարվել նրա հետ։

—Գնա, քեզ կարգի՛ բեր։

Տղան զգաց, որ մայրն այդ ասաց արդեն ոչ այն խստությամբ, որով սկսել էր ծեծել։ Նա լուռ գնաց դեպի դուռը։

Հետևյալ օրը մայրը տանն էր, և տղան ստիպված կերավ իր նախաճաշը։ Թիթեղե տանիքից բակ իջնելու միակ ճանապարհը, որով կարող էր անցնել շունը, կիսաքանդ, բարձր պատն էր։ Տղան մինչև երեկո լուսամուտից ստեպ-ստեպ նայում էր այդ պատին։ Բայց շունը չերևաց։ Տղան մտահոգ էր։ Մայրը նկատեց այդ։

— Դու հիվա՞նդ ես։

— Ո՛չ։

Տղան կպատմեր տանիքի տակ պառկած շան ու ձագերի մասին։ Բայց մայրը կարող էր զայրանալ. «Նորի՞ց սյունով բարձրացել ես կտուր»։

Որպեսզի մայրը չտեսնի իրեն այդ սյունով բարձրանալիս, տղան հետևյալ օրը դասերից հետո կտուր բարձրացավ կիսաքանդ, բարձր պատով։ Այդ երկյուղալի էր։ Բայց նա բարձրացավ։

Շունը մոտ սողաց նրան, պարզեց դունչը. տղան ծոցից հանեց մսով կարկանդակներ, և շունը այդ կարկանդակները կերավ համարյա նրա ձեռքից։ Ապա շունը գլուխը դրեց թաթերին, սովալլուկ հայացքը հառեց նրան։

— Էլ չկա՛,— անկեղծ ասաց տղան։

Շունը թափահարեց պոչը, և տղան հասկացավ, որ երախտագետ է։

— Ես վաղն էլ կգամ։

Շունը նայում էր խելացի։ Տանիքի նեղ արանքում նվնվում էին ձագերը։ Դրանք երկուսն էին։ Տղան չկարողացավ գտնել երրորդին։ Շան աչքերը փայլում էին խոնավ։ Տղային թվաց, թե նա սպասում է իր հեռանալուն, որպեսզի գնա ձագերի մոտ։

Ներքևում տղան թափ տվեց շորերը, լաթի մի կտորով սրբեց կոշիկները։

Հետևյալ օրը մայրը բացեց տղայի պայուսակը, հանեց չորս կարկանդակ և դրեց սեղանին։

— Դպրոցում չե՞ս նախաճաշել։

Տղան տարուբերեց գլուխը։

— Ես քաղցած չէի։

Մայրը կարկանդակները տվեց նրան։ Նա ցանկացավ դուրս գնալ, բայց մայրը արգելեց.

— Տա՛նը կեր։

— Ես պիտի դուրս գամ,— համառեց տղան։

— Ասում եմ տանը կեր։

Մայրը չէր ուզում կոպիտ վարվել, բայց տղան շարունակեց համառել։

— Դրանք ինձ պետք են դուրսը։

— Ինչի՞ են պետք։

— Պիտի տամ շանը,— տղան չսպասեց, որ մայրը հարցնի և պատմեց.— Նա տանիքի տակ է։ Նա սոված է ու հազիվ է շարժվում։

Մայրը հասկացավ, թե նախանցած օրը նրա շորերը ինչու էին փոշոտ, հասկացավ, թե նա ինչպես է բարձրանում կտուր։

— Դու այլևս չե՛ս բարձրանա այնտեղ, հասկանու՞մ ես, կտուր չե՛ս բարձրանա...

Հետևյալ օրը դպրոցից տուն գալիս տղան կարկանդակները թաքցրեց բակում։

Մայրը պայուսակում կարկանդակները չգտավ։ Նա շոյեց տղայի գլուխը և ասաց.

— Դու էլ չես բարձրանա կտուր։ Լա՞վ։

— Չեմ բարձրանա,— պատասխանեց տղան։

Նախաճաշից հետո նա դուրս եկավ բակ, վերցրեց կարկանդակները։ Բայց կիսաքանդ, բարձր

պատի մինչև կեսն էլ չէր մագլցել, երբ ցածից մայրը ճչաց.

— Իջի՛ր, լսու՞մ ես, իջի՛ր, ասում եմ։

Տղան կանգնեց ոտքի, պատի վրա վազեց, մայրը փակեց աչքերը, լռեց. երբ նա բացեց աչքերը, պատի վրա տղան չկար, չկար և պատի տակ...

— Ուրեմն դու ինձ խաբու՞մ ես։ Ուրեմն դու ինձ չե՞ս լսում։ Նորից կբարձրանա՞ս կտուր։

Յուրաքանչյուր խոսքի հետ մայրը հարվածում էր։

Տղան լաց եղավ։

Մայրը երբեմն ծեծել էր տղային, բայց ամեն անգամ մայրը իրավացի էր եղել։ Իսկ հիմա մայրը անիրավացի էր թվում. նա չէր խաբի մորը, կլսեր, եթե մայրը հասկանար իրեն։ Եվ տղան լաց էր լինում։ Տղան, կարող էր ասել. «Այլևս չեմ բարձրանա կտուր», և մայրը չէր ծեծի։ Բայց չէր ուզում, որ իր մայրը լիներ անհասկացող։ Եվ լռում էր։

— Դու չե՞ս ուզում լսել ինձ։

Տղան միայն լալիս էր։



Նկ. ՎԱԶԵՆ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Հետո նա մենակ պառկած էր մահճակալի տակ։ Նա շատ տխուր էր և լուռ հեկեկում էր. ոչ թե նրա համար, որ իրեն չէին թողնում բարձրանալ կտուր, ոչ թե նրա համար, որ այնտեղ, տանիքի տակ անտեր շունը բաղցից կարող էր սատկել, և ոչ էլ նրա համար, որ իրեն ծեծում էին։

Մորը նա թվում էր կամակոր։ Մայրը չէր ուզում, որ իր տղան բարձրանար կիսաքանդ պատի վրա, չէր ուզում, որ նա խաբեր իրեն։

Ճաշի ժամանակ տղան խռոված էր։

Մայրը հասկացավ, որ նա իրեն մեղավոր չի զգում։ Զգաց, որ կարելի էր լինել ավելի մեղմ, ավելի հանգիստ հասկացնել։ Նա շոյեց տղայի գլուխը։

— Դու խռովե՞լ ես, դու գիտես, որ ես քեզ շատ եմ սիրում։ Եվ չեմ ուզում, որ բարձրանաս...

Տղան հանկարծ, կարծես զարմացած, հարցրեց.

— Դու ինձ սիրու՞մ ես։

Մայրը երկար չմտորեց պատասխանը, այլ ասաց անմիջապես, որովհետև դա շատ պարզ էր ու հասկանալի։

— Բոլոր մայրերն էլ սիրում են իրենց զավակներին։

— Այդ շունն էլ մայր է։

Տղան չզգաց, թե այդ որքան էր կարևոր, թե դրանով ինքը շատ բան ասաց մորը։ Տղան համոզվեց, որ ինքն իրավացի էր և հաղթեց։ Որովհետև եթե մայրը իրավացի լիներ, նա կունենար որևէ առելիք և անպայման կասեր։

Միայն սատվոտյան դպրոց ճամփելիս մայրը ասաց նրան.

— Նախաճաշդ չպահես։ Իսկ շան համար ես ուտելիք կտամ։

Կեսօրից հետո այդ օրը արևոտ էր։

Տղան պայուսակը ձեռքին վազելով եկավ իրենց պատշգամբը։ Պատշգամբի մի անկյունում պառկած էր խայտոտ շունը։ Նա պառկած էր ինչպես սովոր էր, գլուխը առջևի թաթերին դրած, հայացքը հառել էր տղային։ Ձագերը պատսպարվեցին մոր մեջքի հետևը։ Տղան կռացավ շան վրա, ձեռքով խառնացրեց նրա բրդոտ, տաք գլուխը, մյուս ձեռքից վար դրեց պայուսակը, զույգ ձեռքով բռնեց այդ գլուխը, բարձրացրեց դունչը, մտեցրեց իր դեմքին, նայեց աչքերի մեջ։

Մայրը եկավ պատշգամբ։

Տղան մորը նայեց նույն պարզ, մտերիմ հայացքով։

— Դու գնա նախաճաշի՛ր։ Ես կկերակրեմ նրան,— ասաց մայրը։

Սենյակի լուսամուտից տղան պատշգամբում դեռ երկար տեսնում էր մոր խաղաղ, տրտմախառն դեմքը, որ հակված էր պատշգամբի մի անկյունում, արևի տակ պառկած շան ու ձագերի վրա։

# Ո՞Վ ԵԿԱՎ

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

Ջնծաղիկը քնով էր,
Բայց այն ո՞վ էր, այն ո՞վ էր
Այն ո՞ւմ անուշ պաչիկից
Քունը փախավ աչիկից:

Այն ո՞վ կանչեց ծիծեռին,
Ճկլան մեղվին, թիթեռին,
Ո՞վ դաշտերը զարդարեց,
Կակաչ, շուշան, վարդ փռեց:

Այն ո՞ւմ շունչն էր այդպես տաք,
Ձյունից մաքրեց դուռ ու բակ,
Ո՞ւմ ծիծաղով քչքչաց
Առուն, սարից իջավ ցած:

Այդ գարունն էր հերարձակ,
Արեգակն էլ գլխին թագ՝
Եկավ իրեն հարդարեց,
Դաշտ ու այգի զարդարեց:



Երկվորյակ քույրեր

ՍՏԵՓԱՆՅԱՆ ԱՆԱՀԻՏ
(Երևան, 6 տարեկան)

# ՓՈՔՐԻԿ ՓԱՅԼԱԿՆ ՈՒ ՓԱՅՏԵ ՁՈՂԸ

ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԻՆԱՍՅԱՆԻ

*Հինգերորդ հարկի բնակարաններից մեկի դռան առաջ նստել է մի փոքրիկ տղա: Այո, Փայլակն է. նա վերադարձել է դպրոցից, գրքերի պայուսակը դրել է տակն ու նստել:*

*Կարծում եք նա չի՞ ուզում ներս մտնել:*

*Օ՜, նրա քթին վաղուց է հասել տատի եփած կարկանդակների ու թանապուրի հոտը: Հը՜մ... Նա դռան անցքից նույնիսկ լսում է տատիկի ոտնաձայնը: «Գուցե տատիկն ինձ համար սեղանի վրա ուտելու բան է դնում»:*

*Փայլակը շատ է ուզում ներս մտնել, բայց այս էլ քանիերորդ անգամն է, որ կանգնում է պայուսակի վրա, մեկնում ձեռքը, ձգվում, ձգվում, որքան հնարավոր է, բայց իզուր... Փայլակի ձեռքը զանգի կոճակին չի հասնում:*

*Նա հիշում է այդ օրվա վերջին դասը...*

*— Երեխանե՛ր, պայուսակները դրեք սեղանների վրա,— հանկարծ վերջին դասին ասաց ընկեր Համբիկը:*

*Աշակերտներն իրար երեսի նայեցին. ոմանք սկսեցին փսփսալ, ոմանք ծիծաղեցին, բայց բոլորն էլ պայուսակներն անխոս դրեցին սեղանների վրա:*

*Ընկեր Համբիկն սկսեց հերթով անցնել շարքերի միջով և մեկ-մեկ ստուգել պայուսակները:*

*Երեխաների փսփսոցները գնալով շատանում էին, որովհետև ավելանում էին ընկեր Համբիկի կողքին կանգնած Անուշիկի ձեռքի իրերը. հոլ, պարսատիկ, գույնզգույն թելեր, կոտրված դանակ, մեխեր, փոքրիկ մուրճ...*

*Երեխաներն ուշադրությամբ հետևում էին ընկեր Համբիկի ձեռքերին, որոնք արագ-արագ շարժվում էին սրա-նրա պայուսակի մեջ և*

այնտեղից հանում ավելորդ իրերը:

Ահա ուսուցչուհին կանգնած է դասարանի ամենափոքրիկ տղայի՝ Փայլակի կողքին:

— Փայլա՛կ, ինչո՞ւ համար ես դպրոց բերել այս ձողը,—հարցնում է նա:

Փայլակը լուռ է: Նա գլուխը կախ, աչքերը մռայլ՝ կանգնած է ուսուցչուհու դիմաց:

Ուսուցչուհին հարցը չի կրկնում, նա փայտե ձողը դնում է հավաքած իրերի վրա և շարունակում է ստուգել մյուսների պայուսակները: Իսկ Փայլակը աչքի պոչով նայում է փայտե ձողին ու մտածում. «Իսկ եթե մոտենամ ու ընկեր Համբիկի ականջին կամաց ասեմ, թե ինչու համար եմ պայուսակի մեջ պահում այդ ձողը...»

Հենց այդ պահին հնչում է զանգը: Երեխաներն աղմկում են:

— Տո՛ւն, տո՛ւն...

Եվ Փայլակը տխուր-տխուր վերցնում է պայուսակը, մի անգամ էլ աչքը գցում փայտե ձողին, ընկեր Համբիկին և, ոչինչ չկարողանալով ասել, ընկերների հետ վազում է դուրս:

Ահա և իրենց շենքը: Փայլակը բարձրանում է աստիճաններով, բարձրանում է երկրորդ հարկը, երրորդ, չորրորդ և վերջապես հինգերորդ հարկը ու կանգ առնում իրենց դռան առաջ...

Եվ հիմա նստած սպասում է: Սպասելուց էլ ձանձրացավ ու սկսեց մտածել. «Է՜, ի՜նչ լավ կլիներ, եթե իր տատիկն էլ ուրիշների նման լավ լսեր, ինչո՞ւ է այդպես, է՜...» Հա՛, նա հիշեց, որ տատիկը փոքր ժամանակ երեք օր մնացել է ձյան մեջ, երեք գիշեր ու ցերեկ... Հետո հիվանդացել է, երկու ամիս պառկել է հիվանդանոցում, առողջացել, բայց ականջները «ծանրացել են»:

Դրա համար էլ Փայլակը չէր փորձում թակել դուռը: Ի՞նչ օգուտ դրանից, միևնույն է, տատիկը չէր լսի: Հայրիկը հատուկ զանգ է միացրել խոհանոցը, պատշգամբը. պետք է երկար և ուժեղ զանգ տալ, որ տատը լսի: Դե, ի՞նչ կա հայրիկի ու մայրիկի համար, նրանք տուն են գալիս այն ժամանակ, երբ Փայլակը տանը չի լինում: Եվ դեռ զանգի ձայնը լրիվ չլսած, Փայլակը վազում, բաց է անում դուռը: Դժվարն իր գործն է, երբ ժամը 12-ին վերադառնում է դպրոցից, և տանը միայն տատիկն է:

Ասենք դա բոլորովին էլ դժվար բան չէր, քանի կար փայտե ձողը...

Հակառակի նման ոչ ոք էլ չէր երևում նրանց մուտքում:



Ի՞նչ աներ Փայլակը, նա չէ՞ր կարող սպասել մինչև հայրիկի ու մայրիկի վերադարձը: Արդյոք չիջնե՞լ բակ և խնդրել մեկին ու մեկին: Բայց ոչ, չէ՞ որ Փայլակն իր աչքում մեծ տղա է, առաջին դասարանցի, գերազանցիկ աշակերտ...

Է՜, գոնե տատիկը հանկարծ դուրս գար:

— Թը՛մբ, թը՛մբ, թը՛մբ,—հանկարծ Փայլակն սթափվեց. լսվեց մեկի ոտնաձայնը:

*Փայլակն իսկույն թռավ նստած տեղից և աստիճանների արանքից ցած նայեց: Նա իսկույն ճանաչեց բժիշկ պապիկին:*

*Փայլակը վազեց նրան ընդառաջ: Պետք էր շտապել. նրանք ապրում էին երկրորդ հարկում: Փայլակը հևալով կանգնեց բժիշկ պապիկի դիմաց:*

*— Բարև՛ ձեզ:*

*— Բարև՛, Փայլակ ջան:*

*— Գիտե՞ք, բժիշկ, գիտե՞ք ինչ է պատահել,—սկսեց կմկմալ Փայլակը:*

*— Ինչ՛, տատիկդ սի՞րտը:*

*— Ո՛չ, ո՛չ... մեր դռան զանգը...*

*— Հապա բարձրանանք:*

*Բժիշկը ձեռքը դրեց Փայլակի ուսին, և նրանք բարձրացան հինգերորդ հարկը: Նա հաստ մատը դրեց զանգի կոճակի վրա և, լավ ճանաչելով տատիկին, երկար զանգ տվեց:*

*Դռան հետևից լսվեց տատի ոտնաձայնը:*

*— Ձեր զանգն աշխատում է, հապա ինքդ փորձիր...*

*Փայլակը նորից փորձեց ձգվել, այդ պահին տատիկը բացեց դուռը:*

*Բժիշկ պապիկը նայեց Փայլակին, նայեց զանգի կոճակին, ժպտաց, գլխով բարևեց տատին ու իջավ ցած:*

*Այդ օրը երեկոյան հայրիկը Փայլակի համար նորից փայտե ձող պատրաստեց և ասաց.*

*— Փայլակ ջան, ուսուցչուհիդ չի բարկանա, եթե նորից ստուգի ձեր պայուսակները. դու նրան ասա. «Ընկեր Համիկ, այս ձողն ավելորդ չէ...»*



# ՄՈՐԱՔՈՒՅՐ ՍՈՆԱՆ

ՍՈՍ ՍԱՐԳՍՅԱՆ

— Տեսնում ես ժամանակ չունեմ,— բարկացավ մայրը,— գնա ինքդ ուզիր:

Համիկը հենց դրան էր սպասում. պոկվեց տեղից, և մի րոպե չանցած, արդեն հարևանի դարբասի մոտ էր:

— Սոնա՛ մորաքույր, Սոնա՛ մորաքույր,— բղավեց նա շնչակտուր լինելով, բայց նրան ոչ ոք չպատասխանեց:

Համիկը բռնեց դարբասի դռնակի ճաղերից և ուզում էր նորից բղավել, բայց դռնակը, որը թաղի երեխաները սովոր էին միշտ փակ տեսնել, ետ-ետ գնաց ու... բացվեց: Փոքրիկը շատ զարմացավ, բայց ներս գնաց: Զգուշորեն անցավ ծաղիկների նեղլիկ մարգերի միջով: Առավոտյան ցողի ուլունքների ծանրությունից ծաղիկները քնքշորեն թեքել էին իրենց փոքրիկ գլխիկները և ուրախացած ժպտում էին:

Համիկը չոքեց, երկար նայեց ծաղիկներին, հետո պարզեց ձեռքը ու զգուշորեն պոկեց դրանցից մեկը:

Հանկարծ նրան թվաց, որ ծաղիկը լաց է լինում: Նա քնքշանքով շոյեց ծաղկի նուրբ թերթիկները և մոտեցրեց շուրթերին:

— Ինչպե՞ս ես համարձակվել առանց հարցնելու ներս մտնել, հը՞: Սոնա մորաքույրն էր: Նա չարացած մոտեցավ Համիկին:— Անպիտան երեխա:

Համիկը մեղավոր ժպտաց:

— Սոնա մորաքույր, ես կանչեցի... բայց... այսօր իմ ծննդյան օրն է և...

Սոնա մորաքույրը խլեց ծաղիկը, դեն նետեց, ու մի հայացք ձգելով նրանց տան կողմը և համոզվելով, որ իրենց ոչ ոք չի տեսնում, երեխային արագ մոտեցրեց դարբասին ու հրեց դուրս:

Մեկ էլ ոտքդ այստեղ չդնես, թե չէ...

Դռնակը շրմփոցով փակվեց:

Շփոթված Համիկը վազեց իրենց բակը: Նա իրեն շատ մեղավոր էր զգում: Երևի այդ պատճառով էլ մայրիկին ոչինչ չասաց

Երեկոյան հավաքվեցին հյուրերը։ Հասմիկն արդեն մոռացած առավոտվա դեպքը, ուրախ թռվռում էր երեխաների հետ, երբ հանկարծ հայտնվեց Սոնա մորաքույրը։ Նա սկզբից համբուրվեց Հասմիկի մոր հետ, հետո ժպտալով շնորհավորեց Հասմիկին, քնքշորեն շոյեց նրա մազերը, համբուրեց և դիմելով մորը՝ ասաց.



— Մեր թաղում մի հատ է։ Շատ, շատ լավ բալիկ ունես։

Հասմիկն անմիջապես հիշեց առավոտվա դեպքը։ Ամաչեց, շփոթվեց, հետո հանկարծ ուզեց լաց լինել։ Այդ ժամանակ մեծերն սկսեցին իրենց խոսակցությունը, և Հասմիկն աննկատ հեռացավ։

Երբ ուշ երեկոյան, հյուրերին ճանապարհ դնելով, մայրիկը մտավ երեխաների սենյակը, Հասմիկը դեռ քնած չէր։

Մայրը մոտեցավ։

— Դու ինչո՞ւ քնած չես, բալիկ ջան, հիվա՞նդ հո չե՞ս, — հարցրեց նա և կռանալով համբուրեց աղջկա նիհարիկ ուսը։

— Չէ՛, — շշնջաց աղջիկը և մոր վիզը գրկելով, քաշեց դեպի իրեն։

— Իսկ ի՞նչ է պատահել։

Հասմիկը չպատասխանեց։ Հետո, հանկարծ ավելի պինդ հպվելով մորը, հարցրեց.

— Մամա՛, բա սուտ խոսել կարելի՞ է։

— Չէ՛, աղջիկս, դա լավ չի, հիշում ես այն հեքիաթը, որ պատմեցի սուտասան տղայի մասին։ Դրա համար նրան...

— Հիշում եմ, հիշում, — ընդհատեց մորը ու նորից երկար լռեց։

— Մամա, ինչո՞ւ... իսկ... իսկ, որ...

— Դե լավ, Հասմիկ ջան, — հորանջելով ընդհատեց մայրը, — ուշ է արդեն, քնիր, քնիր։ — Ու հեռացավ։

Հասմիկը պինդ փակեց աչքերը և ուզեց քնել, բայց դեռ երկար ժամանակ չէր կարողանում։ Մի ինչ-որ բան խանգարում էր նրան։

# Գառնուկը

ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ (Անգլերենից)



*Ա՛յ իմ գառնուկ,*
*Խելոք ու հեզ,*
*Դու քանի՞ պարկ*
*Բուրդ կտաս մեզ։*
*— Ձեզ բուրդ կտամ՝*
*Ինչքան ուզեք,*
*Բայց թե հիմա*
*Ինձ մի՛ խուզեք։*

*Մի պարկ կտամ*
*Տիգրանիկին,*
*Որ բրդյա շոր*
*Ջունի հագին։*
*Մի մեծ պարկ էլ*
*Անահիտին,*
*Որ չմրսի*
*Ձմռան ցրտին։*

Նկ. ԺԵՆՅԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ



# ՄԻ ԿՏՈՐ ԵՐՇԻԿԻ ՄԱՍԻՆ

ԼԻՍԱ ԲԱԼԱԴՅԱՆ

Նախաճաշին Համլիկը նստել էր Վահանիկի, Նունիկի և Արսենի կողքին։ Սեդա մորաքույրը ափսեներն ու գդալները արդեն բոլորին բաժանել էր։ Նա միայն Վահանիկին էր նոր ափսե տվել, որի վրա նկարված էր մի աքլոր։ Վահանիկն ուրախությունից ծափ էր տալիս, իսկ Արսենը շրթունքները ուռցրել, նստել էր։ Ամեն անգամ, երբ Սեդա մորաքույրը մոտենում էր իրենց սեղանին, Արսենը լացկան ձայնով ասում էր. «Ես էլ եմ նոր ափսե ուզում»։

Նախքան տաք կերակուրներ բաժանելը բոլորին մի-մի կտոր երշիկ տվեցին։ Ա՜յ թե ուրախացան երեխաները... Բոլորն իսկույն լռեցին և գործի անցան։ Համլիկն էլ երշիկ շատ էր սիրում, Նունիկն էլ։ Նրանք դեռ նոր էին պատրաստվում ուտել իրենց բաժինը, երբ Արսենը միանգամից կուլ տվեց իր երշիկը։

— Ես աշխարհի չափ եմ սիրում երշիկ,— ասաց նա։

— Ես էլ եմ շատ սիրում,— ավելացրեց Նունիկը։

Արսենը աչքերը չէր հեռացնում Նունիկի բաժնից, իսկ նա կարծես դիտավորյալ դանդաղում էր ուտել։ Հետո Նունիկը մտածեց, մտածեց և իր երշիկը գիջեց Արսենին։

Համլիկը շատ զարմացավ. հենց նոր Նունիկն ասաց, որ երշիկ շատ է սիրում, էլ ինչո՞ւ իր բաժինը տվեց Արսենին։

Այդ ժամանակ նրանց սեղանին մոտեցավ դաստիարակչուհին։ Վահանիկը չհամբերեց և ասաց.

— Ընկեր Հայկուշ, Արսենը Նունիկի բաժին երշիկը կերավ։

— Ինչպե՞ս թե կերավ,— զարմացավ դաստիարակչուհին։

Արսենը ծամում էր երշիկի վերջին կտորը։ Նա ընկեր Հայկուշի աչքերին չէր նայում, այլ նայում էր ուրիշ կողմ։

Ընկեր Հայկուշին թվաց, որ Վահանիկը ինչ-որ սխալ բան ասաց, և հարցրեց Նունիկին։

— Դու կերա՞ր քո երշիկը։

Նունիկը սկզբում ոչինչ չպատասխանեց, հետո ասաց.

— Ես իմ բաժինը տվեցի Արսենին։

— Ինչո՞ւ, դու չե՞ս սիրում երշիկ,— զարմացավ ընկեր Հայկուշը։

— Ես... ես սիրում եմ, — կմկմաց փոքրիկ աղջիկը,— բայց Արսենը աշխարհի չափ է երշիկ սիրում։

Ընկեր Հայկուշը շոյեց Նունիկի մազերը։ Հետո հանդիմանող հայացքով նայեց Արսենին։ Փոքրիկ տղան միանգամից կարմրեց և կախեց գլուխը...



ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆ

ՇԱՐՏՐ (Ֆրանսիա)

# Ակնոցներիս պատմությունը

ՌԱՍՈՒԼ ՓԱՐՎԻԶԻ
(Իրանական գրող)

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Այս դեպքը պայծառ օրվա պես դեռ կենդանի է հիշողությանս մեջ։ Կարծես երկու ժամ առաջ կատարված լինի։*

*Մինչև ութերորդ դասարան ես կարծում էի, որ ակնոցն էլ ձեռնափայտի կամ փողկապի նման զարդ են անում եվրոպական ճաշակի հետևողները՝ գեղեցկության համար։*

*Քեռիս՝ Միրզա-Ղոլամթեզան շատ պճնամոլ էր։ Հագնում էր նեղ շալվար, իսկ փողկապները ստանում էր Փարիզից։ Քեռիս առաջին մարդն էր, որին ես տեսել էի ակնոցներով։ Նրա կոշիկների պսպղուն փայլը, ճաշի ժամանակ դանակ ու պատառաքաղ գործածելը և այլ եվրոպական բարքերը եկան համոզելու ինձ, որ իսկապես ակնոցը նույնպես մոդա է։*

*Բայց խնդիրը դա չէ, լավ է պատմությունն սկսեմ սկզբից։*

*Իմ հասակը տարիքիս համեմատ միշտ էլ բարձր է եղել։ Մայրս, ինձ ու եղբորս համար հագուստ գնելիս, միշտ էլ տրտնջում էր, թե երկու եղբայրներս էլ կարծես դրոշակի ձողափայտեր լինենք՝ լոլոզ-լոլոզ։*

*Հակառակ բարձր հասակիս՝ իմ տեսողությունը սաստիկ թույլ էր։ Բայց ես չգիտեի ինչ է կարճատեսությունը և այդ պատճառով էլ, յուրաքանչյուր դասարան փոխադրվելիս, ձգտում էի տեղ գրավել առաջին շարքում, գրատախտակին ավելի մոտ։ Համարյա ամեն օր ես և դասարանի զաճաճ տղաները իրար հետ գժտվում էինք տեղի համար։ Բայց որովհետև ես չար էի, դասընկերներս վախենում էին ինձանից և ենթարկվում։*

*Դե, գործն էլ հո այդպես հեշտ չէ՞ր վերջանում։ Մի օր մեր ուսուցիչներից մեկը դպրոցի դռան մոտ մի ապտակ հասցրեց երեսիս, այնպես ուժեղ, որ ամբողջ բակով մեկ արձագանքեց ձայնը և հասավ աշակերտների ականջին։ Ապտակի ուժեղ հարվածից կայծեր թռան աչքերիցս, և երբ անհավոր ցավից ես բռնել էի երեսս, ուսուցիչը մի քանի հայհոյանքներ տալով՝ ասաց.*

*— Ի՞նչ է, կույր ես, թե՞ լորդի տղա ես դառել. փողոցում մարդ ես տեսնում, չե՞ս ուզում բարևել։*

*Պարզվում է, որ երեկ պարոն ուսուցիչը փողոցի մյուս մայթով անցնելիս է եղել, և ես չեմ նկատել նրան ու չեմ բարևել։ Նա էլ իմ այդ արարքը վերագրել է հպարտության և այսօր վրեժն է լուծում։*

*Տանն էլ ոտքս դիպչում էր ջրամանին կամ կժին. ջուրը թափվում էր, ամանը կոտրվում։ Ծնողներս էլ չհասկանալով, որ ես կարճատես եմ, սկսում էին նախատել ինձ։*

*Ցավն այն էր, որ ինքս էլ չգիտեի, թե կարճատես եմ։ Կարծում էի, բոլորն էլ ինձ նման են*

---

Տպագրվում է թեթև կրճատումներով

## ԻՆՔՆԱՀԱՎԱՆ ՓԻՍՈՒՅԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ



Ափի մոտ կար մի սիրուն նավ,
Փիսոն եկավ մեջը մտավ։

Վազեց, ցատկեց նա անվարան,
Մեկ էլ տեսավ մի մեծ պարան։

Պարանի հետ այնքան խաղաց,
Որ արձակվեց նավը հանկարծ։

Փիսոն ճչաց.— Մյա՜ու, տարան...—
Բադերն ափից տեսան նրան.

— Հիմա կգա՜նք, հիմա կգա՜նք,
Մի՛ վախենա, չկա վտանգ։

— Չեմ վախենում ու չեմ դողո՜ւմ,
Ես ձեզանից լավ եմ լողո՜ւմ։

Բայց դողում էր նա սարսափից։
Սագերը ձայն տվին ափից.

տեսնում, այդ պատճառով էլ նրանց հան-
դիմանությունները լսելիս՝ մնում էի լուռ ու անխոս և պախարակում էի ինքս ինձ անփութության համար։

Ֆուտբոլի խաղի ժամանակ մյուս երեխաների պես ոտքս ես էլ տանում ու նշան առած՝ ուզում էի հարվածել գնդակին, բայց ոտքս գնդակին չդիպչելով՝ աննպատակ ձգվում էր օդում։ Սաստիկ վշտանում էի։ Երեխաները ծիծաղում էին ինձ վրա։ Նրանց ծաղրը վիրավորում էր իմ ինքնասիրությունը։



Մի անգամ ձեռնածու էր եկել մեր քաղաքը։ Տղամարդիկ, կանայք ու երեխաները խումբ-խումբ գնում էին տեսնելու նրա աչքակապությունները։ Դպրոցներից մեկի դահլիճը դարձրել էին ներկայացման վայր։

Մեր վերատեսուչը ձրի մի տոմս տվեց ինձ։ Ես սովորում էի գերազանց, իսկ լավ աշակերտներին մի-մի տոմս էր հատկացված։ Իմ ուրախությանը չափ ու սահման չկար։ Բայց տեղս դահլիճի վերջումն էր Աչքերս հառեցի բեմին, լարեցի տեսողությունս։ Ձեռնածուն դուրս եկավ բեմ ու սկսեց իր խաղերը։ Շուրջս նստածները զվարճանում, զարմանում, վախենում, ծիծաղում ու ծափահարում էին, իսկ ես որքան ճիգ ու ջանք էի գործադրում, կկոցում էի աչքերս, դարձյալ ոչինչ պարզ չէի տեսնում, ինչ-որ մութ ստվերներ էին երևում աչքերիս։ Հարցնում էի կողքիս նստածին։ Նա էլ կամ չէր պատասխանում, կամ բարկացած գոռում էր վրաս.

— Մի՞թե կույր ես, չե՞ս տեսնում։

Այդ երեկո ես զգացի, որ չեմ նմանվում ուրիշ երեխաների։ Սակայն ամեն բան չկարողացա հասկանալ։ Եվ տհաճ զգացումը ծանր թախիծով լցրեց իմ սիրտը։ Մեկը չգտնվեց, որ հասկանար ինձ։

* * *

Չնայած արդեն քանի տարի էր, ինչ քաղաքի բնակիչ էինք դարձել, բայց մեր ընտանիքը պահպանում էր իր գյուղական սովորությունները։ Ինչպես գյուղում պատահում էր, հանկարծ տաս-տասներկու հոգի ձիերով, ջորիներով ու էշերով



— Գետը խոր չէ, գուր մի ճչա՛,
Հիմա կօգնենք քեզ անպատճառ։

— Ես չեմ ճչում, այլ երգում եմ,
Երգ ու պարով նավարկում եմ։

Շունը տեսավ կատվին հանկարծ,
Դեպի նավը իսկույն լողաց։

Կատուն հիշեց վեճերը հին,
Փշտացրեց նրա դեմքին։

— Գնա,—ասաց,—քաչալ հիմար
Քեզ ո՞վ կանչեց, ինչո՞ւ եկար։

Ու մեր փիսոն ինքնահավան
Իր նավակով հասավ Սևան։

-գալիս էին դաշտից և մի քանի օր հյուր մնալու համար խարիսխ էին գցում մեր տանը. Շիրազում ես կրկնվում էին նույն այցելությունները։ Ճիշտ է, հայրս սնանկացած փաստաբան էր, բայց հին քամին դեռ գլխումն էր։ Հյուրը մեր տանից անպակաս էր։

Մեզ այցելող հյուրերի թվում կար ողբասաց մի պառավ։

Բարեպաշտության հետ մեկտեղ, նա սրամիտ էր ու պերճախոս։ Երեխաներս շատ էինք սիրում նրան։ Երբ գալիս էր, մեր քեֆին քիչ չէր հասնի. գիտեինք, որ գիշերը հեքիաթ է պատմելու մեզ համար։ Մայրս էլ շատ էր սիրում նրան, որովհետև մեր տանը ծագած վիճաբանությունների ժամանակ նա շարունակ պաշտպանում էր մորս։ Մի խոսքով սիրված հյուր էր։

Նրա հետ անբաժան էր իր բոխչան, որի մեջ պահում էր մի քանի կրոնական գրքեր և հին ակնոցը։ Այդ ակնոցն ուներ նշանավոր փոքրիկ ապակիներ, պոչերին աջ կողմից փոխարինում էր ծայրը կիսոլորած մի պղնձալար, իսկ ձախից՝ սպիտակ, հաստ թել։ Այսպես, կարդալու ժամանակ նա պղնձալարը օղակում էր աջ ականջին, իսկ թելը մի քանի անգամ փաթաթում ձախ ականջին ու կապ գցում։

Մի օր, երբ պառավը տանը չէր, ես մոտեցա բոխչային։ Նայեցի գրքերը, իսկ հետո զվարճանալու համար ակնոցը հանեցի պատյանից, դրեցի աչքերիս, որպեսզի գնամ բռնեմ մորս և իմ ծամածռություններով ծիծաղեցնեմ նրան։

Օ՜հ, երբեք մոռանալ չեմ կարող։

Ի՜նչ հոյակապ էր այդ պահը։ Մի ակնթարթում աշխարհը փոխվեց ինձ համար։ Ամեն բան այլ տեսք ընդունեց։ Հիշում եմ, աշնանային երեկո էր։ Արևը դունատ դեղնություն ուներ։ Ես, որ մինչ այդ ծառերի փոխարեն ինչ-որ խառնաշփոթ ու անձև կույտ էի տեսնում, հանկարծ հստակ տեսա, կարողացա տարբերել նրանց տերևները։ Ես, որ մեր սենյակի պատուհանից երևացող հարևանի պատը տեսնում էի իբրև ծայրեծայր գորշ մի մակերես, երեկոյան արևի կարմիր լույսի տակ իմ աչքերին երևացին նրա աղյուսները և նույնիսկ միմյանցից անջատող ճեղքերը։

Դժվար է պատկերացնել, թե ինչպիսի երջանկություն համակեց ինձ։ Կարծես նոր աշխարհ տվեցին ինձ։ Կյանքում այլևս երբեք նման մի երջանկություն չհանդիպեցի, և ոչ մի բան այլևս չփոխարինեց հրաշալի այդ վայրկյաններին։ Ուրախությունից թռչկոտում ու ծափ էի տալիս։ Զգացի, որ նորից եմ ծնվել, և կյանքն այժմ բոլորովին այլ իմաստ է ստացել ինձ համար։

Ձայնս խեղդվում էր կոկորդումս։ Ակնոցը հանեցի թե չէ, աշխարհը նորից մթագնեց աչքերիս։

Ակնոցը դրեցի պատյանի մեջ։ Մորս ոչինչ չհամարձակվեցի ասել։ Ասելուն պես նա կարող էր ճիպոտով լավ հասցնել գլխիս ու մեջքիս։ Գիտեի, որ պառավը մի քանի օր դեռ մեր տուն չի գալու։ Թիթեղյա ակնոցամանը դրեցի ծոցս և ուրախ-ուրախ գնացի դպրոց։

* * *

Մեր դասարանը գեղեցիկ պատշգամբով մի դուռ ուներ։ Դպրոցի շենքը եղել էր նախկին հարուստներից մեկի տունը։ Բակը լիքն էր նարնջի ծառերով։ Սենյակները մեծ մասամբ հայելազարդված էին։ Մեր դասարանը այդ տան լավագույն սենյակներից մեկն էր։ Պատուհաններ չուներ։ Նրանց

Հանկարծ քամի ելավ ուժգին,
Քիչ էր մնում թռցնի կատվին։

Մոլեգնում էր լիճը ահեղ,
Նավն էր ճոճվում ինչպես տաշեղ։

Փիսոն ճչաց.— Վա՜յ, շուտ հասե՜ք,
Կործանվում եմ, ինձ փրկեցե՜ք...

Ու փրկարար նավում իսկույն
Բադը կանչեց.— Շո՜ւտ, օգնությո՜ւն...

Հասան, տեսան կատուն թրջված,
Նավի եզրից կախվել է ցած։

Ու շնիկը մեր համարձակ,
Բադիկները հմուտ սուզակ՝

Ջրերի հետ կռիվ տվին,
Ազատեցին դժբախտ կատվին։

Եվ կախեցին գլուխն ի վար,
Որ կուլ տված ջուրը ետ գար։



փոխարինում էին հին ճաշակով պատրաստված գույնզգույն ապակիներով դռնակներ, որոնցից արևը թափանցում էր ներս։

Առաջին դասը սարսափելին էր։ Ուսուցիչը մի զառամյալ ծերունի էր։ Ճիրազում սովորած բոլոր իմ հասակակիցները ճանաչում են նրան։

Ես, որ արդեն վստա՛հ էի իմ տեսողության վրա, այլևս չփորձեցի գժտվել որևէ մեկի հետ առաջին շարքի նստարանին նստելու համար, այլ ընտրեցի ամենավերջին նստարաններից մեկը։

Իմ այս արարքը կասկած առաջացրեց ծերուկ ուսուցչի մեջ, մանավանդ որ ճանաչում էր, որպես չար աշակերտ և վարքի տետրակներից այնքան էլ լավ անցյալ չունեի։ Ես նկատեցի, թե ինչպես ուսուցիչը խեթ-խեթ նայում էր ինձ։ Երևի մտածում էր. սա ի՞նչ անսովոր տեղաշարժ է, չլինի՞ թե, այս չարաճճին մի օյին է ուզում խաղալ։ Երեխաներն էլ քիչ թե շատ զարմացան։

Այնուամենայնիվ դասն սկսվեց։ Ուսուցիչը մի նախադասություն գրեց գրատախտակի վրա, հետո գծեց մի աղյուսակ, որի առաջին սյունակում գրեց բառերը, իսկ դիմացը՝ վերլուծությունը։ Քանի դեռ ուսուցիչը զբաղված էր գրելով, ես առիթից օգտվելով՝ հանեցի ակնոցը և, հարմարեցնելով աչքերիս, լարը օղակեցի աջ ականջիս, իսկ թելը մի քանի անգամ փաթաթեցի ձախ ականջիս ու կապեցի։ Այդ միջոցին իմ տեսքը շատ ծիծաղելի էր։ Երկար ու անտաշ հասակս, լայն երեսս, սապատավոր կեռ քիթս՝ ոչ մեկն էլ չէին համապատասխանում մանր ու նշաձև ապակիներով ակնոցներին։ Դեռ այդ ոչինչ, պղնձալարն ու թելը լրացնում էին իմ ծիծաղաշարժ տեսքի ամբողջական պատկերը։ Ամենատխուր մարդն անգամ կփռթկար ինձ նայելիս, ո՞ր մնաց դպրոցի աշակերտները, որ պատի ճեղքերին նայելիս էլ հռհռում են։

Առաջին տողը գրելուց հետո, մեծապատիվ ուսուցիչը շուռ եկավ ու նայեց դասարանին։ Նա դեն գցեց ձեռքի կավիճը և ապշած նայեց ինձ։ Ես չէի հասկանում, թե ինչ է կատարվում։ Հաճելի զգացումն այնպես էր պարուրել ինձ, որ աշխարհն անգամ մոռացել էի։ Ես, որ առաջին շարքից հազար ու մի դժվարություններով էի կարդում գրատախտակի վրա գրված տողերը, այժմ տասներորդ շարքում բլբուլ էի դարձել։ Ես ուղղակի կախարդված էի հիացմունքից։

Իմ միամտությունն ու անհոգությունն ավելի համոզեցին ծերունի ուսուցչին, որ իմ այս արարքը կազմակերպված խաղ է նրան ծաղրելու համար։

Հանկարծ կատաղած վագրի պես նա թռավ իմ կողմը և ասաց.

—Ա՜խ դու, անպիտա՛ն ավանակ, կապկություն ես անում, հա՞... Ի՞նչ է, կարմիր խնձո՞ր ենք ուղարկել հետևիցդ...

Դասարանը մինչ այդ լուռ էր։ Աշակերտները հանգիստ արտագրում էին գրատախտակին գրված նախադասությունը։ Սակայն ուսուցչի զայրացկոտ ձայնից հետաքրքրված, նրանք շուռ եկան դեպի մեր կողմը։ Հենց որ աշակերտները տեսան ինձ, կարծես երկրաշարժ եղավ, ու սարը փլվեց։ Միահամուռ քրքիջի թնդյունից դղրդաց դպրոցն ու դասարանը։ Ծիծաղն ու հռհռոցը ծայր առավ, այլևս վերջ չկար...

Այս երևույթն ավելի կատաղեցրեց ուսուցչին։ Երեխաների քրքիջը և ուսուցչի ցասկոտ ձայնը սթափեցրին ինձ։ Զգացի մոտալուտ վտանգը։ Իսկույն ուզեցի հանել ակնոցը։ Դեռ չէի բարձրացրել ձեռքերս, որ ուսուցիչը գոռաց.

— Ձեռք մի՛ տուր, թո՛ղ, հենց այդպես էլ քեզ

---



Բժիշկ սագը քննեց նրան,
Հավը ցամքոց գցեց վրան,



Այծը տվեց փափուկ վերմակ,
Որ փիսիկը քնի տաք-տաք։

Եվ երբ Ցավը ետ եկավ տուն,
Ողջ-առողջ էր արդեն կատուն։

— Բարեկամներ իմ թանկագին.—
Ասաց նա իր դռան շեմքին.—

Ես իմ խելքից ընկա Սևան,
Էլ չեմ լինի ինքնահավան.

Կլինեմ միշտ բարի ու հեզ.
Երախտապարտ կմնամ ձեզ։



Նկ. ՎԱԶՐԻԿ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ



պետք է դիրեկտորի մոտ տանեմ: Հիմա՛ր, դու պետք է մշակություն անես, թող ի՞նչ դպրոցն ու գիրքը, գնա բաղնիքի կտուրի վրա ճան խաղա:

Աշակերտների լիաթոք ու բարձրաձայն ծիծաղից շարունակվում էր ալեկոծվել դասարանը: Ես շփոթվել էի: Չգիտեի անելիքս: Ակնոցն աչքերիս՝ պուշ-պուշ նայում էի ուսուցչի երեսին: Այս անգամ նա կատաղած գոչեց.

— Վե՛ր կաց, վե՛ր կաց, դու՞րս կորի...

Ես զգացի, որ նա պատրաստվում է ապտակել ինձ: Հանցավորի պես կուչ եկա, որպեսզի խուսափեմ ուսուցչի սպասվելիք ապտակից: Այն է, ուզում էի ճարպկորեն անցնել նրա կողքով ու դուրս ծլկել, մեկ էլ ծանր ապտակն իջավ երեսիս: Հարվածից աջ ականջիս հարմարեցված պղնձալարը բացվեց ու ակնոցը թելին ամրացրած կողմով մնաց ձախ ականջիցս կախ: Տեսարանը դարձավ ավելի ծիծաղելի: Ես ուզեցի հավաքել ու կարգի բերել ակնոցը, սակայն ուսուցչի ոտքի երկու ուժեղ հարվածներն ինձ դուրս շպրտեցին դասարանից. նույնիսկ ցավից հառաչելու ժամանակ չեղավ:

* * *

Դպրոցի դիրեկտորը, վերատեսուչն ու արաբերենի ուսուցիչը երկար խորհրդակցությունից հետո, որոշեցին հեռացնել ինձ դպրոցից: Երբ ուզում էին հայտնել որոշումը, ես պատմեցի նրանց իմ կարճատեսության մասին:

Սկզբում չհավատացին, բայց իմ խոսքերը երևի այնքան անկեղծ էին, որ քարն անգամ կազդվեր: Երբ համոզվեցին, որ ես իսկապես կարճատես եմ, ներեցին ինձ: Արաբերենի ծերուկ ուսուցիչը, որ կոտրված գդալի պես ամեն տեղ մեջ էր ընկնում, դառնալով ինձ, ասաց.

— Տղա ջան, ինչու՞ շուտ չէիր ասում, ի՞նչ է, հոգիդ հո դուրս չէ՞ր գա: Վաղը, դասերից հետո կգաս Շահ-չերաղ փողոցի ակնոցավաճառ Միրզա-Սուլեյմանի խանութի մոտ և կսպասես ինձ:

Դառն ապրումներից հետո, ճնշված երեկվա ամոթանքից, մյուս օրը գնացի նշանակված տեղը: Արաբերենի ուսուցիչն էլ եկավ, Միրզա-Սուլեյմանից մեկ-մեկ առնելով ակնոցները, դրեց իմ աչքերին և ասաց.

— Նայի՛ր Շահ-չերաղի աշտարակի ժամացույցին, տե՛ս, փոքրիկ սլաքը տեսնու՞մ ես, թե՞ չէ:

Ես էլ մեկ-մեկ փորձեցի ակնոցները: Վերջապես մի ակնոց հարմարվեց տեսողությանս, և ես կարողացա տեսնել ժամացույցի սլաքը:

Տասնհինգ ղռան փող տվեցի, առա ակնոցը, դրեցի աչքերիս ու այն օրվանից դարձա ակնոցավոր:

Պարսկերենից թարգմ.
Հ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

# ԿԻՆՈՅԻ ՀՐԱՇՔՆԵՐԸ

Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
(Կինոռեժիսյորի ասիստենտ)

Նկ. ՎԱԶՐԻԿ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

Կինոֆիլմի նկարահանումը շատ ու շատ հետաքրքիր գաղտնիքներ ունի։

Հավանաբար, երեխաներ, դուք հիշում եք «Զանգեզուր» կինոնկարը, որտեղ հնարագետ Արմենը հանկարծակի հանդիպելով թշնամու հսկայական բանակին, մտածում է ինչպե՞ս կասեցնել թշնամու շարժումը, ժամանակ տալ Հակոբյանի փոքրաթիվ խմբին վերադասավորելու ուժերը և օգնություն ստանալու Կարմիր Բանակից։ Կայծակի արագությամբ նրա գլխում միտք է ծագում, բարձրանում է ժայռի վրա և սկսում պարել։ Զինվորները դադարեցնելով՝ շարժումը հմայված դիտում են Արմենին։ Վերջինս գերի է ընկնում։ Արմենին տանում են գնդակահարման։ Գազազած խմբապետը առաջարկում է Արմենին մահվանից առաջ պարել։ Հերոս մարտիկը պարում է։ Իր կյանքի վերջին րոպեին անգամ մարտնչում է թշնամու դեմ, նա գրկում է վայրագ խմբապետին և նրա հետ միասին նետվում է անդունդը...

Կամ զանազան կինոֆիլմերում դուք տեսնում եք այրվող քաղաքներ, շինություններ, ջրհեղեղներ, որոնք սրբում, ավերում են իրենց ճանապարհին պատահած կառույցները։

Որպեսզի շատ հարցեր ձեզ համար պարզ դառնան, եկեք, երեխաներ, մտնենք կինոստուդիա։

Մուտքի մոտ խոշոր տառերով գրված է. «Ծխելը խստիվ արգելվում է», իսկ մյուս կողմում էլեկտրական լույսով լուսավորված մի ուրիշ մակագրություն. «Լռություն, նկարահանում է կատարվում»։

Իսկ դա նշանակում է, որ պետք է շատ զգույշ լինել, չէ՞ որ զգայուն միկրոֆոնը ձայնագրում է յուրաքանչյուր շշուկ։ Ներսում տեղադրված է կինոնկարահանման տաղավարը (պավիլիոնը), որը մի հսկայական շինություն է 10 մետր բարձրությամբ, 40 մետր լայնությամբ և 50 մետր երկարությամբ։

Այդտեղ տեղադրված են արհեստական ծյունածածկ ժայռեր, որոնցից կախված են սառցի կտորներ, երկնքի կապույտ ֆոնի վրա մեծ վարպետությամբ նկարահանված են սպիտակ ամպերը։

Սա «Տասներկու ուղեկիցները» կինոնկարի դեկորացիայի մի մասն է։ Նկարահանումների ժամանակ օգտագործվում է նաև իրական ձյունածածկ ժայռերը, ինչպես նաև բնության այլ տեսարաններ։

Պավիլիոնում դեկորատիվ ժայռերի կողքին, հսկաների պես շարված են խոշոր-լուսարձակները։ Սրանք էլ մեր արևներն են, որոնք լուսավորելու են այս ժայռերը։

Կինոնկարահանման տաղավարի տակ գտնվում է 3 մետր խորությամբ ջրավազանը, որտեղ նկարահանվում են ջրի հետ կապված բազմաթիվ գործողություններ։

Ձեզ, երեխաներ, հավանաբար շատ է հետաքրքրում, թե ինչպես են կատարվում հսկա շոգենավի նկարահանումները։ Ավազանում տեղավորում են շոգենավի փոքրիկ մոդելը, պատրաստվում է մեծ ճշգրտությամբ։ Նկարահանման ժամանակ խորտակում կամ պայթեցնում են ավազանում լողացող նավի մոդելը. հիշո՞ւմ եք «Ադմիրալ Ուշակով» կինոնկարի ծովամարտի տեսարանը, այդ նկարահանված է այս ձևով։ Իհարկե, նախօրոք ծովի վրա նկարահանվում է իսկական շոգենավը իր ուղևորներով, որոնք մեր դերասաններն են, կատարում են իրենց դերերը, այս բոլորին կցվում է խորտակվող նավի կադրը։

Այժմ տաղավարի մի մասում տեղադրված են «Ճանապարհը» կինոնկարի համար պատրաստված «Տիգրանի բնակարանում» դեկորացիաները։ Դա իսկական բնակարան է, պակասում են միայն չորրորդ պատը և առաստաղը։ Սենյակները կահավորված են համապատասխան ոճերի, պատերին փակցված են նկարներ, գորգեր, սենյակում կա ռադիոընդունիչ, սեղան, մահճակալ։

Իսկ ինչո՞ւ բնակարանում պակասում են չորրորդ պատը և առաստաղը։ Նկարահանման ժամանակ վերևից պետք է լուսավորվի սենյակը, դրա համար էլ առաստաղ չունի, իսկ չորրորդ պատի փոխարեն դրված է նկարահանող ապարատը։ Սկզբում փորձնական նկարահանումների միջոցով կատարվում է դերակատարների ընտրություն։ Յուրաքանչյուր դերի համար նկարվում են մի քանի դերասաններ, ընտրվում են նրանցից լավագույնները։

Ի տարբերություն թատրոնի, կինոյի դերակատարի տարիքը պետք է համապատասխանի պահանջվող դերին։ Այստեղ պատանու դերում նկարահանվել չի կարող հասակավոր դերասանը, քանի որ էկրանը երբեմն խոշորացնում է դերասանի դեմքը, և երևում են դեմքի կնճիռները, դիմագծերը։

Դուք շատ հաճախ մանկական կինոֆիլմերում տեսնում եք պիոներների, հոկտեմբերիկների, դեռ ավելին՝ երբեմն «մեր դերասաններն» են դառնում մանկապարտեզի և մանկամսուրի սաները: Այսպես օրինակ՝ «Կոչված են ապրելու» կինոնկարում հանդես են գալիս Արշալույսը և Սերյոժան. նրանք երկուսն էլ մանկապարտեզներից են: Մի անգամ, նկարահանման պահին, փոքրիկ դերասանը՝ Անահիտը սկսեց իր համար խաղալ քարերի հետ:

— Չեմ ուզում նկարվել,—ասաց նա և շարունակեց իր խաղը:

Այդ պատճառով մի քանի ժամ ընդհատվեց նկարահանումը: Կինոյում փոքրիկների հետ գործ ունենալը դժվար է:

Շատ հետաքրքիր է կինոֆիլմի թարգմանության՝ դուբլյաժի ամբողջ պրոցեսը: Էկրանի վրա անընդհատ ցուցադրվում է ռուսերեն կինոնկարի մի փոքրիկ հատված, այսպես օրինակ՝ «Մարդու



ճակատագիրը» կինոֆիլմից: Էկրանի դիմաց կանգնում են դերասանները և ուշադիր հետևում կինոնկարին: Նրանք նախօրոք անգիր գիտեն հայերեն տեքստը և ուշադրությամբ հետևելով կինոնկարի գործող անձանց շրթունքներին, աշխատում են ռուսերեն բառերի փոխարեն տեղադրել հայերեն հնչյունները: Ցուցադրվող պատկերներին համընթաց լսվում է հայերեն տեքստը և ձայնագրվում մագնիտաֆոնի վրա: Այնուհետև ձայնաժապավենը դեռ երկար «ճանապարհ» պիտի անցնի. նախ՝ խոսակցությունը արտատպվում է կինոժապավենի վրա, տեղադրվում նկարի պատկերների հետ, և այնուհետև նրան միանում է երաժշտությունը: Այս բոլորը հատուկ մեքենաների օգնությամբ տպվում է առանձին ժապավենի վրա, ապա վերամշակվում լաբորատորիաներում:

Կինոնկարահանումների ժամանակ հաճախ օգտագործում են մոդելներ և մակետներ:

«Ճանապարհ» կինոֆիլմում կա այսպիսի մի հատված: Տասներորդ դասարանն ավարտած Բենիկի հայրը գնել է սեփական մեքենա: Բենիկը անկախ իր կամքից ընկնում է հակահասարակական արարքով զբաղվող երիտասարդների միջավայրը: Երբ նա նկատում է, որ իր մեքենայի մեջ գտնըվող մարդիկ փախչում են միլիցիոներների հետապընդումից, որոշում է, ինչ գնով լինի, կանխել նրանց փախուստը: Նա դանդաղեցնում է մեքենայի ընթացքը: «Ուղևորները» հրամայում են մեքենան արագ քշել, վերջինս հրաժարվում է: Սկսվում է անհավասար պայքարը, ուժեղ հարվածներ են տեղում Բենիկի գլխին, դեմքին, կատաղած ուղևորը ուզում է Բենիկի ձեռքից խլել ղեկը:

— Չե՛ք փախչի,—ատամների արանքից գոչում է Բենիկը:

Իր կյանքը վտանգի ենթարկելով, նա շուռ է տալիս ավտոմեքենան: Ահա այս վերջին պահը նկարահանելու համար օգտագործվում է մոդելը, որը նման է գեղեցիկ խաղալիքի:

Վերջերս տեղի ունեցան ջրհեղեղի փորձնական նկարահանումներ: Մակետագործը պատրաստել էր մի գեղեցիկ քաղաք, իր բազմահարկ շենքերով, փողոցներով, պուրակներով: «Քաղաքի» միջով անցնում է մի գետ:

— Ուշադրություն, սկսում ենք,—լսվում է օպերատորի ձայնը. գործի է դրվում նկարահանման ապարատը:—Ջուրը բա՛ց թողնել,—կրկին տրվում է հրամանը:

Բացվում են ծորակները, և «գետով» հոսում է ջուրը, որը դուրս գալով գետի հունից, սկսում է հոսել փողոցներով: Սկզբում փլվում է մի քանի կամուրջ, ապա ջուրը հեղեղում է քաղաքը: Արմատախիլ են արվում փողոցի երկայնքով տնկված ծառերից մի քանիսը: Մի ավտոմեքենա, ջրի հոսանքի հետ գալով, դիպչում է էլեկտրական սյունին և խորտակվում: Փլվում են շենքերը: Երկու րոպեում գեղեցիկ քաղաքը դառնում է ավերակ:

Ահա թե ինչպիսի բազմազան միջոցներ են օգտագործվում նկարահանումների ժամանակ: Եվ այս բոլորը դեռևս շատ չնչին մասն են կազմում: Կինոֆիլմերի նկարահանման աշխատանքները խիստ բազմազան են և հետաքրքիր:














Իմ անունը Վիտամին է: Ինձ երևի ճանաչում եք արդեն: Բայց ես մենակ չեմ. մենք քառասունից ավելի եղբայրներ ենք: Մեր անունը ծագել է «վիտ» բառից, որ նշանակում է կյանք: Տեսնու՞մ եք, հենց մե՛ր անունն էլ ասում է, որ առանց վիտամինների կենդանիները և բույսերը ապրել չեն կարող: Ահա պատմեմ մի դեպք:

1519 թվականին խիզախ ծովագնաց Մագելանը և նրա նավաստիները դուրս էին եկել շուրջերկրյա ճանապարհորդության: Հանկարծ նրանք սկսեցին հիվանդանալ: Սկզբում ցավեցին ատամները, բորբոքվեցին լնդերը, իսկ մի քանի օր հետո ատամներն սկսեցին թափվել, մաշկը ծածկվեց սոսկալի ցավոտ խոցերով: Շատ-շատերը տուն չվերադարձան: Նույն հիվանդությամբ տառապեցին նաև Քրիստափոր Կոլումբոսի, Ջեմս Կուկի, ռուս ծովագնաց Լապտևի նավաստիները: Նրանք հիվանդացան, որովհետև ոչ մեկը մեր մասին գաղափար չուներ: Նրանք կարծում էին, թե բնության տարերքին կարող են հաղթել միայն անվախությամբ:

Ինչպես ասացի, մենք քառասունից ավելի եղբայրներ ենք, և ամեն մեկս իր գործն ունի, իր պարտականությունը:

Իմ անունը Վիտամին A է: Ինձ կգտնեք թարմ




կարագի, ձվի, ձկան յուղի, կաղամբի, գազարի, սոխի մեջ: Եթե ես չլինեմ, մարդիկ կկորցնեն իրենց տեսողությունը և կտառապեն հավկուրությամբ: Հենց որ մի քիչ մթնեց, այլևս չեն տեսնի:

Ինձ հետ հաճախ լինում է իմ եղբայրներից մեկը. նրա անունն է Վիտամին C: Եթե նա չլինի, մարդիկ կհիվանդանան լնդախտով: Այ, հենց իմ այս եղբոր բացակայության պատճառով էր, որ Մագելանի նավաստիները հիվանդացան լնդախտով: Իմ այս եղբորն էլ հաճախ կգտնեք կաղամբի, գազարի, պոմիդորի մեջ: Բայց նա ավելի շատ լինում է կիտրոնի, նարինջի, մանդարինի մեջ: Ճիշտն ասած, Վիտամին C-ն մի վատ սովորություն ունի. հենց որ մի քիչ տաքանում է, ձյան նման հալչում է և ոչնչանում: Մեր եղբայրների մեջ նա ամենից նուրբն է: Եթե ուզում եք, որ չհիվանդանաք լնդախտով, ապա կերեք թարմ բողկ, կանաչ սոխ, դեղձ, խնձոր, ծիրան, գետնախնձոր, գազար: Դժբախտաբար Վիտամին C-ն չի սիրում ապրել ոչ պահածոների և ոչ էլ կոմպոտների մեջ:

Մյուս եղբայրս, որ ամենից ավագն է, կոչվում է Վիտամին Б: Նա տարիքով մեծ է և արդեն մոտավորապես 12—14 երեխա ունի, որո՛նք կոչվում են Վիտամին Б-1, Б-2, Б-3... մինչև Б-12: Սրանք կանոնավորում են ուղեղի և նյարդերի աշխատանքը: Իսկ որտեղ որ նրանք չկան, մարդու օրգանիզմն է թափանցում մի ծանր ցավ, որ կոչվում է բերի-բերի: Ճապոնիայում, Հնդկաստանում, Կոնգոյում, ինչպես նաև գաղութային երկրներում, տարածված է այս հիվանդությունը:

Բերի-բերին մարդուն շուտ է հյուծում, դարձնում է կմախքի նման: Սովետական երկրում բերի-բերիի մասին գիտեն միայն գրքերից: Հա, մոռացա, որ երև-

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ
(Բժիշկ)

## ԵՐԲ ՉԿԱ

*ՎԱՐԴԱՆ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

Կարքի մասերը վիճեցին մի օր,
Թե ամենից շատ ո՛րն է հարկավոր,
Կե՞ռը սրածայր, ծանրո՞ցը կապար,
Ձո՞ղը, խցա՞նը, թե՞ թելը երկար:

Փայտյա ձողն ասաց.—Ե՛ս եմ կարևոր,
Ե՛ս եմ ձուկ բռնում ջրից ամեն օր:
Խցանը հուզվեց.—Գրողը տանի,
Ո՞վ է ձուկ բռնում առանց խցանի:

Կեռն ու ծանրոցը այստեղ վայրացան.
— Ա՛յ դու տկար ձող, ա՛յ անբան խցան,
Հայտնի է՝ ձուկը այդ մենք ենք բռնում,
Իզուր եք այստեղ դուք այդպես ռռնում:

# Պատմում է

# ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆ

— Ե՛ս եմ, միայն ե՛ս, բոլորից կապում,
Այդ ես եմ ջրից ձկները հանում,
Ես թելն եմ, կապը, ի՞նչ է ծանրոցը,
Չքվե՛ք բոլորդ գրողի ծոցը:

Այսպես կեռ, ծանրոց, թել, ձող ու խցան
Մեկմեկու վրա շատ խիստ բարկացան,
Իրարից խռով, իրարից կատ-կատ,
Գնացին հասան մեծ գետին Ավատ,
Այստեղ հանկարծ մի գիժ քամի բռնեց,
Փայտե ձողն առավ ու ձորը նետեց,
Իսկ մյուսները կորցրին իրար,
Ընկան, խեղդվեցին գետի մեջ վարար:

խաների համար շատ մեծ գործ է կատարում իմ մյուս եղբայր՝ Վիտամին Д-ն: Նա գիշեր ու ցերեկ աշխատում է, որ ամրացնի փոքրիկ երեխաների և պատանիների ոսկորները: Նա շատ սիրում է արևի լույսը: Հենց որ արևի շողն ընկնում է երեխաների մարմնի վրա, այս եղբայրս իսկույն զարթնում է և սկսում աշխատել: Նա կիր ու աղ է տեղափոխում երեխաների ոսկորների մեջ և ամրացնում դրանք: Բայց նա մի քիչ հպարտ է և ամեն տեղ չի ապրում. Նրա սիրած տեղն ձկան յուղն է: Այս վիտամինը ամբողջ օրը կռվում է երեխաների թշնամու՝ ռախիտ հիվանդության դեմ:

Հենց որ պատմում եմ Վիտամին Д-ի մասին, իսկույն հիշում եմ մի տխուր պատմություն: Մի մայր իր փոքրիկ տղային բժշկի մոտ տարավ: Երեխայի ձեռքի և ոտքի ոսկորները ծռմռվել էին, իսկ գլխի ոսկորը՝ փափկել: Երեխան գունատ էր և շատ նիհար: Նրա հասակակիցները մանկապարտեզ էին



գնում, իսկ նա քայլել անգամ չէր կարող:

— Ձեր երեխան տառապում է ռախիտով, — ասաց բժիշկը. — Նրա միակ փրկությունը ձկան յուղն է և արևի ճառագայթները:

Երիտասարդ մայրն իսկույն դեղատնից ձկան յուղ գնեց երեխայի համար:

Տեսնեիք, թե ի՛նչ արեց իմ եղբայր Վիտամին Д-ն: Փոքրիկի ոտքերն ու մեջքն ամրացան, թշիկները, որ դեղնել ու ցամաքել էին, դարձան կլորիկ, վարդագույն:

Իմ պատմությունը լսելուց հետո, հիմա ինձ կհարցնեք, թե բանջարեղեններն ու մրգերը կարելի է ուտել ամռանը, իսկ ձմռա՞նը:

Անհոգ եղեք, մենք՝ վիտամիններս, շատ լավ ապրում ենք տոմատի, գազարի, խնձորի և այլ հյութերի մեջ: Մենք լինում ենք նաև կարտոֆիլի, սնկերի, թարմ մսի, կենդանիների լյարդի մեջ: Գործարաններում պատրաստում են վիտամիններով հարուստ ձկան յուղ, կոնֆետներ, հաբեր:



Սկզբում ես ասացի, որ մենք քառասուն եղբայրներ ենք: Իմ եղբայրներից մի քանիսը օգնում են, որ արյունը շուտ մակարդվի, և հասարակ վերքից մարդը չմեռնի: Մնացած եղբայրներս էլ աշխատում են, որ մարդիկ լավ աճեն, ունենան բարձր հասակ, կուռ մկաններ:

Բայց այսօր այսքանը բավական է, դուք արդեն մեզ հետ ծանոթացաք, այժմ այնպես արեք, որ մենք ձեզ ծառայենք ազնվորեն և լինենք օգտակար:

Նկ. ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆԻ

# Վիտամինը

# Ընկե՛րն՝ առողջ

Դպրոցական սպորտային մրցումների ժամանակ Աշոտը մեծ հետաքրքրությամբ և մի փոքր էլ նախանձով էր նայում այս կամ այն սպորտսմենի գեղեցիկ ու ճկուն շարժումներին։ Նա անկեղծորեն հիանում էր



Նստելու ճիշտ ձևը





Նստելու սխալ ձևեր

նրանց մարմնի ներդաշնակ կառուցվածքով, սլացիկ ու գերող կեցվածքով։

Չգիտես ինչու նրան թվում էր, որ այդ «բախտավորները» այդպես ծնվում են ու այդպես էլ մեծանում։ Եվ գուցե դեռ շատ տարիներ մնար նա այդ կարծիքին, եթե ուսումնական տարին սկսվելուց մի քանի օր անց, ստուգելով դպրոցականների առողջության վիճակը, դպրոցի բժիշկը հանդես չգար Աշոտի և նրա ընկերների համար այնքան հետաքրքրական ու կարևոր զեկուցումով։

Աշոտը լարվածությամբ լսում էր բժշկին և զարմանում, որ նա ճշտորեն կարդում էր իր՝ Աշոտի մտքերն ու բացում այնքան անհասկանալի թվացող գաղտնիքները։

— Ուղիղ կեցվածքը, — պատմում էր բժիշկը, — մարդուն արտաքին գեղեցկություն և առույգ տեսք տալուց բացի, խիստ կարևոր է առողջության համար։ Չէ՛ որ այսպիսի մարդկանց մոտ բոլոր ներքին օրգանները, և հատկապես սիրտն ու թոքերը, աշխատում են անկաշկանդ կերպով, շնչառությունը լինում է ազատ, սրտի աշխատանքը՝ կանոնավոր, արյան շրջանառությունը՝ լավ։ Ահա այստեղ, ձեզ հետ միասին, դահլիճում է գտնվում 6-րդ դասարանի աշակերտ Աշոտ Վարդանյանը։ Չնայած նրա սիրտն ու թոքերը առողջ են, բայց նա շատ շուտ հոգնում է նույնիսկ ամենաթեթև մարմնամարզական վարժությունների ժամանակ։ Իսկ գիտե՞ք ինչն է դրա պատճառը, միայն այն, որ հենց իր՝ Աշոտի մեղքով նրա ողնաշարը կրծքի վանդակի շրջանում նկատելիորեն կորանալով դեպի առաջ, արգելակում է վանդակում տեղավորված օրգանների ազատ աշխատանքը։

Անակնկալի եկած Աշոտի մարմնով տհաճ ջերմության մի ալիք անցավ։

— Այժմ, — շարունակեց բժիշկը, — ես ձեզ կծանոթացնեմ մարդու կեցվածքն աղավաղող մի շարք պատճառների հետ։

Մարմնի ուղիղ կեցվածքը կախված է ողնաշարի կանոնավոր աճից, զարգացումից և այն պարփակող մկաններից ու կապաններից։

Ողնաշարի տարբեր պատճառներից առաջացած ծռումները աղավաղում են մարդու կեցվածքը, վնասում նրա առողջությունը։ Քանի որ մատաղ հասակում մարդու ոսկորները անհամեմատ աղքատ են դրանց ամրություն տվող աղերից և այլ նյութերից, ուստի այդ հասակում ավելի հաճախ են պատահում ծռումները։ Դրա համար, գեղեցիկ կեցվածք ունենալու մասին պետք է հոգալ հենց այդ հասակից։

Ողնաշարի դժվար բուժվող և առավել հաճախ հանդիպող ծռումների պատճառներից մեկը սխալ դիրքով նստելն է, հատկապես գրելու կամ կարդալու ժամանակ կծկվելը։ Դրանից ողնաշարը կրծքի վանդակի շրջանում աղեղի ձևով առաջ է թեքվում։ Ողնաշարի արատներից խուսափելու համար պետք է նստել ուղիղ, ազատ, առանց



Վատ կեցվածքով պատանին քիչ է տարբերվում ծերունուց



Լավ կեցվածք

Վատ կեցվածքներ

կրծքի վանդակը սեղանի եզրին հպելու: Սեղանին պետք է հենվել ձեռքերի արմունկներով՝ մեկ ուղիղ գծով:

Հասակին անհամապատասխան բարձր նստարանն ու ցածր սեղանը հարկադրում են նստել խիստ կորացած դիրքով:

Ուղիղ կեցվածքին վնասում է նաև մեկ ոտքի վրա երկար ժամանակ հենված մնալը, ուժից վեր ծանրություններ փոխադրելը, ոչ ճիշտ քայլվածքը և այլն: Քայլելուց պետք է մարմինը ուղիղ պահել, ձեռքերը թեթևակիորեն շարժելով ետ ու առաջ, կրունկները չքսել գետնին: Ձեռքին գրքեր կամ պայուսակ ունենալու դեպքում դրանք չի կարելի հպել կրծքին:

Ոչ ճիշտ կեցվածքի տեր պատանին իր քայլվածքով չի տարբերվում ծերունուց: Ֆիզիկական աշխատանքը և ֆիզկուլտուրան մարմնի ճիշտ կեցվածքի համար ամենալավագույն միջոցներն են:

* * *

Այս դեպքից չորս տարի հետո դպրոցականների ֆիզկուլտուրային միջքաղաքային մրցումների չեմպիոն, 10-րդ դասարանի աշակերտ Աշոտ Վարդանյանին մենք հանդիպեցինք դպրոցի ֆիզկուլտ դահլիճում:



Լավ կեցվածքը զարդարում է մարդուն ամեն հասակում:

Քանդակագործի ուշադրությանն արժանի նրա ներդաշնակորեն զարգացած մարմնին նայելիս դժվար էր հավատալ, որ երբեմն նրա կրծքի վանդակի շրջանում գոյություն է ունեցել թեկուզ չնչին մի արատ:

ՄԿՐՏԻՉ ԴԱԼԼԱՔՅԱՆ

(բժիշկ)



Նա սիրում էր ծաղիկներ, սիրում էր գարուն և ամենից շատ ձեզ, երեխաներ: Գարնան առաջին ծիծեռնակներին նա ողջունում էր անհուն բերկրանքով, անմեղ հիացմունքով շնչում էր նրբին ձնծաղիկի բուրմունքը և չարաճճի երեխաների վառվռուն աչիկներում որսում էր այն բազմերանգ կայծերը, որոնցից հյուսում էր իր գեղեցիկ բանաստեղծությունները:

«Ձեզ համար, երեխաներ» սիրում էր կրկնել նա:

Ինչքա՜ն-ինչքա՜ն մանուկներ իրենց թոթով լեզվով արտասանել են նրա «Լենին պապին», «Լենին», «Գարուն», «Գարնան երգ» գողտրիկ բանաստեղծությունները: Ինչքա՜ն բալիկներ իրենց փոքրիկ թաթիկներով ոգևորված ծափահարել են, լսելով նրա հուզիչ «Ձնծաղիկը», «Ծաղիկներ», «Անցա՜ն», «Ճամբարի առավոտը» ոտանավորները: Ո՛րքա՜ն մանուկ սրտեր է նա հուզել, որքա՜ն անտես կրակներ վառել նրանց մատաղ կրծքերում:

Երեխաների համար բազմաթիվ բանաստեղծություններ գրելուց բացի, Հայրապետ Հայրապետյանը կազմել է դասագրքեր և երկար տարիներ աշխատել, որպես մանկավարժ:

Այժմ այլևս չի բաբախում մանուկների այնքան սիրելի ուսուցչի և բանաստեղծի՝ Հայրապետ Հայրապետյանի սիրտը: Նա հավետ քնեց 88-ամյա հասակում, բայց նրա գեղեցիկ բանաստեղծությունները միշտ երիտասարդ ու անմոռաց կպահեն նրա հիշատակը:

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

*ԱՆԱՀԻՏ ՑԻՑԻԿՅԱՆ*

Դուք, երեխաներ, հավանաբար լսել եք Հենրիխ Շլիմանի մասին, որը մտադրվել էր հայտնաբերել Տրոյան: Լսած կլինեք նաև Կարտերի և Լորդ Կառնարվոնի մասին, որոնք Արքաների հովտում գտել են եգիպտական փարավոն Տուտանհամոնի նշանավոր գերեզմանը: Հայտնի են նաև շատ հնագետների անուններ, Շամպոլիոնը առաջինը կարողացավ կարդալ եգիպտական հիերոգլիֆները, Ստեֆանն ու Տոմպսոնը հայտնաբերեցին մայա ժողովրդի հնագույն քաղաքները, Գրոտեֆենդը առաջինն է կարդացել սեպագրերը: Նրանք իրենց հայտնագործություններով և անձնազոհ մեծ աշխատանքի շնորհիվ աստիճանաբար լուսաբանել են մարդկության պատմության մինչ այդ անհայտ հետաքրքիր էջերը:

Իսկ որքա՞ն հետաքրքիր և գրավիչ է հայ հնագույն, ինքնատիպ ու տաղանդավոր ժողովրդի պատմությունը:

Քանի՜-քանի՜ գիտնականներ են իրենց աշխատանքի, գիտելիքների, հետազոտական գործունեության բազմաթիվ ժամեր նվիրել հայ ժողովրդի պատմության հիանալի էջերին:

Եվ ամեն անգամ, երբ հնագետների նոր հայտնագործությունները դառնում են բոլորի սեփականությունը, մենք իմանում ենք ևս մի հետաքրքիր նորություն մեր պատմական անցյալից: Ես ուզում եմ պատմել հնագիտական մի փոքրիկ հայտնագործության մասին, որը մեծ արժեք ունի մեր գիտության ու կուլտուրայի համար: Խոսքը մի սկահակի մասին է, որի նկարը վերջերս պատահաբար ընկավ իմ ձեռքը: Հնագետների կողմից բազմակողմանիորեն ուսումնասիրված այս սկահակը տարիներ շարունակ չի ընկել ոչ մի արվեստագետ-հետազոտողի ձեռքը: Բավական է միայն մի հայացք գցես նրա վրա, որպեսզի հասկանաս նրա ողջ արժեքը:

Հայկ. ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի հնագիտության սեկտորը և Պետական պատմական թանգարանը տարիներ շարունակ պեղումներ են կատարում Դվինի բլուրի վրա:

1953թ. պեղումների ժամանակ Դվինի միջնաբերդի սրահներից մեկի անկյունում գտնվել են կավե և ապակե ամանեղենի կտորտանք: Մեծ վարպետությամբ պատրաստված այդ բազմերանգ սկահակները, գավաթները, ջահերը, անոթները, ամանները կազմում են չափազանց արժեքավոր հավաքածու:

Սակայն դրանց մեջ առավել հետաքրքրություն է ներկայացնում մի սկահակ, որը խիստ տարբերվում է մյուսներից: Այն պատրաստված է ապակուց, շատ գեղեցիկ շափյուղա-մանիշակագույն երանգ ունի, զարդարված է ոսկու և գունավոր էմալի նախշերով: Անոթի նրբությունն ու զարդերի հարըստությունը վկայում են, որ այն պատկանել է պերճանքի առարկաների թվին: Սկահակը, հավանաբար, ծառայել է թանկագին օծանելիքներ պահելու համար: Անոթի վրա նկարված են 4 մեդալյոններ, որոնցից պահպանվել են միայն երկուսը. մեկը ավելի լավ է պահպանված

---

# ԾԱՂԻԿՆԵՐԻ ԹԱԳՈՒՀԻՆ

Վարդն իբրև կուլտուրական բույս առաջին անգամ մշակվել է հին Պարսկաստանում, որտեղից փոխ են առել հույները: Հին հույները իրենց տները, խնջույքների սեղանները զարդարում էին վարդի ծաղկեշղթաներով: Վարդերով էին պսակում հաղթողներին, վարդերով էին ծածկում գերեզմանները:

Հելիոգաբալ կայսրը որպեսզի ազատվի իր մերձավորներից, որոնց նա քողարկված թշնամիներ էր համարում, հրավիրեց խնջույքի, դահլիճը փակել տվեց և դահլիճի երդիկից այնքան վարդաթերթեր լցնել տվեց, որ հյուրերը խեղդվեցին ծաղիկների հոտավետ լեռան տակ:

Վարդերն ունեն մուգ-կարմիր, վառ-կարմիր, ծիրանագույն, բաց-դեղնավուն, սպիտակ, կանաչ և այլ գույների գեղեցիկ ու բուրավետ ծաղիկներ: Կան «մշտածաղկուն» (վաղ գարնանից մինչև ուշ աշուն ծաղկող) վարդենիներ, կան փաթաթվող վարդենիներ, որոնք ունենում են միաժամանակ բացվող բազմաթիվ ծաղիկներ:

Ղրիմում, Միջին Ասիայում և Կովկասում աճեցվում են վարդենու պլանտացիաներ, որոնք վարդի յուղի և պսակաթերթերի առատ բերք են տալիս: Ղրիմի Նիկիտինյան բուսաբանական այգում ավելի քան 4000 տեսակի վարդ է մշակվում:

Հայաստանում գեղեցիկ վարդեր են մշակում Երևանի, Կիրովականի, Ստեփանավանի բուսաբանական այգիներում ու սանատորիաների շրջակայքում:

Սիրելի երեխաներ, լավ կլինի, եթե ձեր դպրոցա-





և հենց դա էլ չափազանց մեծ հետաքրքրություն է ներկայացնում: Այդ մեդալյոնի վրա պատկերված է կնտկնտոցա-աղեղնավոր գործիք նվագող երաժիշտ: Նա ծալապատիկ նըստած է փոքրիկ գորգի վրա: Ունի խոշոր դիմագծեր: Բերանը կիսաբաց է, աչքերը՝ փակ: Կարելի է ենթադրել, որ նա երգում է, նվագակցելով ինքն իրեն:

Սակայն ի՞նչն է ամենակարևորը: Չէ՞ որ երաժշտի պատկերումը հնադարյան իրերի վրա նորություն չէ: Հետաքրքրականն այն է, որ երաժշտի ձեռքի գործիքը շատ նման է ջութակի: Իսկ մեզ հայտնի է, որ ջութակը, որպես երաժշտական գործիք, ճանաչում է գտել ու տարածվել 16-րդ դարից սկսած: Իսկ Դվինի պեղումների ժամանակ գտած սկահակը համապատասխանում է 10—11 դարերին, այսինքն՝ այն ժամանակներին, երբ ջութակը գոյություն չի ունեցել, եղել են միայն նրա հեռավոր նախնիները: Այսպիսով, այս փոքրիկ մեդալյոնում նկարվածը ջութակի հնագույն նախահայրն է հանդիսանում: Այս փաստը ավելի մեծ նշանակություն է ստանում այն պատճառով, որ գործիքագիտության պատմության մեջ կնտկնտոցա-աղեղնավոր քարային գործիքի միայն երկու այսպիսի վաղ ժամանակաշրջանի պատկերումներ կան. այն էլ վերաբերում են 11-րդ դարին: Դրանք տարբեր երկրներում են գտնվում. մեկը՝ Նորմանդիայում, Բոշերվիլ քաղաքի սուրբ Գեորգի տաճարի բարելիեֆի, մյուսը՝ Կիևի Սոֆիայի տաճարի որմնանկարի վրա: Իսկ երրորդն էլ գտնվեց մեզ մոտ՝ Հայաստանում:

Հետաքրքրականն՝ է նաև մեկ ուրիշ հանգամանք: Ինչպես հայտնի է, ջութակի միջնադարյան նախնիները եղել են՝ «ռեբեկ»-ը, որն ունի արևելյան ծագում, և «ֆիդել»-ը: Զարգանալով, կատարելագործվելով, երբեմն համատեղելով մեկի և մյուսի ձևերը, նրանք հանգեցրին գործիքների մի նոր խմբի ծագմանը, որոնք եղան ջութակի անմիջական նախնիները:

Սկահակի վրա պատկերված գործիքը, ոչ «ռեբեկ» է, ոչ էլ «ֆիդել». նրա մեջ կան թե՛ մեկի, և թե՛ մյուսի գծերը, և միաժամանակ այն ինքնատիպ է ու զանազանվում է ջութակի այդ միջնադարյան նախնիներից: Գործիքագիտության պատմությունը դեռևս այդպիսի գործիքի մասին պատկերացում չունի:

Հետաքրքիր է նաև այն, թե ինչպես է երաժիշտը բռնել գործիքը: Արևելքում գործիքները բռնում են ոչ թե հորիզոնական դիրքով, ինչպես պատկերված է այստեղ, այլ ուղղահայաց՝ հենած ծնկանը: Այս հանգամանքը բազմիցս մատնանշվել է հայտնի գործիքագետների կողմից:

Ինչպես տեսնում եք, Դվինի սկահակի վրա եղած պատկերը շատ հետաքրքիր և հազվագյուտ նմուշ է: Նա բոլորովին նոր լույս է սփռում ջութակի պատմության ուսումնասիրության համար, ա՛յն ջութակի, որն այժմ հիմնավոր կերպով մտել է մեր կենցաղի մեջ ու համընդհանուր սեր է վայելում:

---

կան շենքերն ու դպրոցամերձ հողամասերը շրջապատեք նաև բազմերանգ ու բուրավետ վարդենիներով:

Իսկ գիտե՞ք, թե ինչպես պետք է աճեցնել վարդենին:

Վարդենու մոտ հողը փորում են, և փարթամ ճյուղը աղեղնաձև կորացնելով, նրա մի մասը թաղում են հողում ու ծայրը վեր բարձրացնում: Ճյուղի թաղած մասի բողբոջների տակ կեղևի վրա կտրվածքներ են անում՝ արմատակալումն արագացնելու համար: Հողում թաղած մասն ամրացնում են անկյունավոր փայտով, իսկ հողից հանած ծայրը կապում են այդ նպատակի համար տնկած ձողին: Թաղած ճյուղը թփից չեն կտրում այնքան ժամանակ, մինչև որ լրիվ արմատակալի: Այս ձևով վարդենիներն անընդհատ բազմանում են:

Վարդենիները բազմացվում են նաև կտրոններով: Այս դեպքում վերցնում են երկու հանգույց ունեցող կտրոններ և տնկում ջերմոցում, խոնավ ավազի մեջ, այնպես, որ աչքը ավազի մակերեսից քիչ բարձր լինի և հաճախ ջրում են: Արմատակալելուց հետո կտրոնները տեղափոխում են լավ պարարտացրած հիմնական հողամասը, խնամքով տնկում ու անմիջապես ջրում:

Վարդենիները բազմացվում են նաև արմատային ծիլերով, այսինքն տնկում են մայր արմատի մի մասը: Բազմացման այս ձևով վարդենիներն ավելի արագ և ուժեղ են աճում:

ԱՇՈՏ ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆ
(Ագրոնոմ, վաստակավոր ուսուցիչ)



# ՁՄԵՌՆ ՈՒ ԾԱՂԻԿՆԵՐԸ

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ

Ձմեռն ասաց.— Ա՛յ ծաղիկներ,
Հեռացել է արևը տաք:
Ցուրտ է արդեն, իմ բալիկներ,
Եկեք քնեք վերմակիս տակ:
Շրջաց ծաղիկ մի անհամբեր.
— Մենք մինչև ե՞րբ պիտի քնենք,
Մի՛ թաքցնի մեզնից, ձմե՛ռ,
Բա որ քնենք ու չզարթնե՞նք:
Մեղմ շոյելով մորուքը իր,
Ասաց ձմեռը սիրալիր.
— Անհո՛գ կացեք, սիրունիկնե՛ր,
Հողից ծնված գարունիկներ,
Ձեզ կարթնացնի առուն արծաթ՝
Գարնան զնգուն երգը դարձած,
Արագիլը երկարոտ,
Երկար կացին՝ ծիլը շաղոտ.
Ձեզ կարթնացնի սիրուն-սիրիկ
Ծիծեռնակը սրաթիկ.
Ձեզ կարթնացնեն գարուն բերող
Կռունկները երամներով.
Ձեզ կարթնացնի հովը նրբին՝
Գարնան շվին առած շրթին
Եվ գետակը աղմկալից,
Որ քաղաք է իջնում սարից.
Ձեզ կարթնացնի արևը մայր՝
Շող մատներով իր անհամար:

# ՇԻՐԱԿԻ

a b c d e f g h i

№ 1

«Շիրակի» կոչվող այս խաղը, որն արտաքինից հիշեցնում է շախմատը ու շաշկին, բոլորովին նոր, սեղանի խաղ է և իր բնույթով տարբերվում է մինչև այժմ եղած բոլոր խաղերից:

ԽԱՂԱԴԱՇՏ

Խաղադաշտը կազմված է 40 սև և 41 սպիտակ վանդակներից (գծագիր № 1): Սպիտակ վանդակների վրա դրված են գումարման, հանման, բազմապատկման և բաժանման նշաններ: Խաղաքարերի վրա կան 1—9 թվանշանները: Երկու խաղացողներից յուրաքանչյուր կողմն ունի 9 խաղաքար, որոնց թվանշանների գումարը կազմում է 45: Խաղը շահելու համար պահանջվում է հավաքել 37 միավորից ոչ պակաս: Սկզբում խաղաքարերը շարվում են 1—2-րդ և 8—9-րդ հորիզոնական գծերի սև վանդակներում: Ըսկզբնական դասավորությունը ըստ նիշերի ազատ է:

ԽԱՂԻ ԸՆԹԱՑՔԸ

Խաղն սկսում են սպիտակները: Յուրաքանչյուր կողմը կատարում է միայն մեկ քայլ: Խաղաքարերը շարժվում են սև վանդակների վրայով, անկյունագծերով: Իսկ վերցնում են ուղղահայաց և հորիզոնական ուղղություններով:

№ 2

№ 3

№ 4

ԻՆՉՊԻՍԻ ԴԵՊՔՈՒՄ Է ՎԵՐՑՎՈՒՄ ՀԱԿԱՌԱԿՈՐԴԻ ԽԱՂԱՔԱՐԸ:

Երբ պարզվում է, որ երկու կողմերի խաղաքարերի նիշերի գումարման, հանման, բազմապատկման կամ բաժանման գործողությունից՝ ստացված արդյունքը կազմում է զույգ թիվ (այն դեպքում, երբ խաղաքարերը գտնվում են դեմ-դիմաց, այսինքն ուղղահայաց և հորիզոնական դիրքերում և նրանց բաժանում է միայն մեկ սպիտակ վանդակ), թվաբանական գործողությունն էլ հենց կատարվում է այդ սպիտակ վանդակում դրված նշանին համապատասխան: Պարզ պատկերացնելու համար հետևեցեք №№ 2, 3, 4. գծագրերին:

№ 5

№ 2 գծագրում նիշ* (N) 2-ը իրավունք ունի վերցնելու սևերի N 8-ը, քանի որ 8-ը բաժանած 2-ի, ստացվում է 4 զույգ թիվը:

№ 3 գծագրում պատկերված է, թե ինչպես սպիտակների N 5-ը իրավունք է ստացել տվյալ դեպքում մեկ անգամից վերցնելու սևերի և՛ N 8 խաղաքարը և N 9-ը: Իսկ ինչո՞ւ, կատարեցեք թվաբանական՝ բազմապատկման և հանման գործողությունները և ստացված զույգ թվերի արդյունքները պարզ կդարձնեն պատասխանը: № 4 գծագրում էլ սպիտակների N 3-ը իրավունք ունի վերցնելու հակառակորդի երեք խաղաքար:

### ԾՈՒՂԱԿ (ՊԱՏԱՅԻՆ ԴՐՈՒԹՅՈՒՆ)

Այս խաղում հնարավոր է նաև ծուղակային վիճակ (գծ № 5) սև N 9-ը շրջափակված սպ. N 3 և N 5-ով ազատ քայլ չունի:

| | a | b | c | d | e | f | g | h | i |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 9 | | | − | | × | | − | | |
| 8 | | + | (9) | : | (8) | : | | + | |
| 7 | − | | × | | + | | × | | − |
| 6 | | : | | − | | − | | : | |
| 5 | × | | + | (1) | : | | + | | × |
| 4 | | : | | − | | − | | : | |
| 3 | − | | × | | + | | × | | − |
| 2 | | + | | : | | : | | + | |
| 1 | | | − | | × | | − | | |

№ 6

Կան նաև ոչ ոքի անելու հնարավորություններ, երբ խաղավերջում մնում են, օրինակ, հակառակորդ կողմերի մեկական քարեր կամ երկու կենտ նիշերով քարեր՝ հակառակորդի զույգ նիշ ունեցող մեկ խաղաքարի դեմ և այլն:

ԽՆԴԻՐՆԵՐ—Ինչպես շախմատում և շաշկիի մեջ, այնպես էլ «Շիրակի» կոչվող այս խաղում կան խնդիրներ հորինելու և լուծելու անսահմանափակ հնարավորություններ: Ահա խնդրի մեկ օրինակ (Գծ № 6): Ծուղակ՝ 3 քայլից: Սպ N 8 I 8, սև N 9 c 8, N 1 d 5:

Խաղաքարերի շարժման գրանցման պայմանական նշանները մնում են նույնը, ինչպես շախմատում:

*Երեխաներ, «Պիոներ» ամսագրի խմբագրությունն առաջին անգամ ուսուցանելով ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆԻ հորինած այս խաղը, սպասում է ձեր նամակներին: Գրեցեք. ձեզ դուր եկա՞վ խաղը. ինչպիսի՞ առաջարկություններ ու լրացումներ ունեք:*

## Ֆոկուսի գաղտնիքը

**Բաժինը վարում է Հայկական ՍՍՌ ժողովրդական արտիստ Հարություն Հակոբյանը**

### ՎԵՑԵՐՈՐԴ ՖՈԿՈՒՍ




### ԻՆՉՊԵՍ ԳՐՊԱՆԻՑ ՀԱՆԵԼ ՎԱՌՎՈՂ ՄՈՄԸ

*Վերցնում եք սովորական բնաճարպի մոմը և վառում այնքան, մինչև պատրույգի ծայրը սևանա, ու մոմի գլխիկը փափկի: Հանգցնելով մոմը՝ նրա փափկած գլխի մեջ խրում եք երեք լուցկու հատ, այնպես, որ ծծմբային գլխիկները լինեն այդ արհեստական պատրույգի ծայրը: Ապա վերցնում եք 9×12 սմ չափսի տախտակի մի կտոր, որ ծածկված է ծծմբի բարակ շերտով: Եթե դուք հնարավորություն չունեք այդ անելու, կարող եք վերցնել նույն չափսի ստվարաթուղթ և նրա վրա փակցնել լուցկու տուփերի ծծմբապատ կողերը:*

*Այդ տախտակը կամ ստվարաթուղթը տեղավորում եք ձեր բաճկոնի կողքի գրպանում: Նույն տեղում էլ պատրույգը դեպի ներքև, տեղավորում եք նախապատրաստած մոմը:*

*Այժմ արդեն կարող եք ելույթ ունենալ. հանդիսատեսներին հայտնելով ձեր նպատակը՝ ձեռքը տանում եք «կախարդական» գրպանը և մոմի ծայրը գաղտնի քսելով ծծմբապատ տախտակին՝ հանում եք հենց նոր վառված մոմը:*

*Հանդիսատեսի վրա ձեր ֆոկուսը հրաշքի տպավորություն է թողնում, բայց եթե նրան բացատրեք ֆոկուսի գաղտնիքը, ապա նա կզարմանա, թե ինչպե՞ս այդպիսի հասարակ բանը չի կարողացել նախօրոք կռահել:*

# ԽԱՉԲԱՌ «ԹՌՉՈՒՆՆԵՐ»

Գծապատկերի դատարկ վանդակներում գրեցեք մնացած տառերն այնպես, որ ձախից աջ կարդացվի տասնմեկ թռչունի անուն:

Եթե ճիշտ գրեք անունները, կլոր վանդակներում գրած տառերը վերևից ներքև կարդալիս՝ կստացվի ձեզ ուղղված մի նախադասություն:

Կազմեց՝ Ա. ԽՐԻՄՅԱՆ

## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» №1. 2

ԽԱՉԲԱՌ—«7» 1. Կավերին. 2. Սարոյան. 3. Պապանին. 4. Բաբելոն. 5. Մանոլով. 6. Գագարին. 7. Բորոդին. 8. Պոգոդին. 9. Մոպասան. 10. Շոլոխով. 11. «Դիլիջան». 12. Տիտանիկ. 13. Փարավոն. 14. Վատիկան. 15. Պուգաչով. 16. Մուրացան. 17. Դավիդով. 18. Սարատով. 19. Վաղինակ. 20. բարիտոն. 21. նունուֆար. 22. Սուրիկով. 23. Ֆեդոտով. 24. Մերուժան:

ԾԱՆՈԹ ԴԵՄՔԵՐ—Պատկերված է ռուս նկարիչ Վասնեցովի «Երեք դյուցազուններ» նկարի կոմպոզիցիան: Հերոսները վերցված են՝ (ձախից աջ) Սուրիկովի «Ստրելեցների մահապատիժը», Ռեպինի «Զապորոժցիներ» և «Բուռլակներ» հանրահայտ նկարներից:

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2—41—83, 2—59—06

ՎՖ 02190 Պատվեր 211 Տպաքանակ՝ 9800: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 9/III 1962 թ.: ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:

Գինը 20 կ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ Ել. ՄԱՆՈՒԿ ՂՈԴՅԱՆԻ



Գ. Սունդուկյան

1859 թվականի ձմեռն էր: Մոսկվայի ունևոր հայերից մեկի ընդարձակ տանը հավաքվել էին մոտ երկու հարյուր հոգի: Բոլորն էլ մոսկվացի հայեր էին: Տեղի էր ունենում մեծ իրադարձություն, ցուցադրվում էր հայերեն ներկայացում:

Հայ թատրոնը, ճիշտ է, ունի ավելի քան երկու հազար տարվա պատմություն, բայց դժբախտ ճակատագրի բերումով շատ երկար ժամանակ, մինչև 19-րդ դարի կեսը հայաբնակ վայրերում թատրոն գոյություն չուներ: Հայկական թատերախաղերը կրկին սկիզբ առան 1858 թվականին, երբ բժիշկ Հեքիմյանը Խասգյուղում (Կ. Պոլիս) հիմնեց առաջին հայկական թատրոնը:

Եվ ահա, դրանից մեկ տարի չանցած Մոսկվայի համալսարանի հայ ուսանողների թատերական խումբը տալիս էր իր անդրանիկ ներկայացումը, որին ներկա էր նաև հայ մեծ գրող Միքայել Նալբանդյանը:

Այնուհետև հայկական թատրոններ ստեղծվեցին այլ վայրերում: Սակայն բեմադրվում էին թույլ պիեսներ, որոնք անկարող էին բարձրացնել նորաստեղծ թատրոնների մակարդակը: Այդ մեծ պակասը լրացնելու եկավ տաղանդավոր թատերագիր Գաբրիել Սունդուկյանը:

Սունդուկյանը շատ ուշ է սկսել գրել. 38 տարեկան հասակում, երբ Պետերբուրգի համալսարանն ավարտելուց հետո վերադարձել էր Թբիլիսի և անցել պետական ծառայության: Առաջին գործը, որը կոչվում է «Գիշերվա սաբրը խեր է», բեմ բարձրացավ 1866 թվականին և արժանացավ մեծ գովեստի: Սակայն «Խաթաբալան» ավելի լավ ընդունելություն գտավ: Դա ոգևորեց Սունդուկյանին, և նրա վարպետ գրչի տակից սկսեցին դուրս գալ նորանոր պիեսներ: Մինչև խոր ծերություն, նա իր գրիչը ցած չդրեց: Մեռնելուց երեք տարի առաջ, ութսունչորս տարեկան հասակում գրեց «Սեր և ազատություն» կատակերգությունը:

Գաբրիել Սունդուկյանի գլուխգործոցը նրա անմահ «Պեպոն» է, որի առաջին ներկայացումը տեղի ունեցավ 1871 թվականին: «Պեպոն» գրելու շարժառիթը հետևյալ դեպքն է եղել: Սունդուկյանը ներկա է լինում Փուզինյանի մի պիեսի ներկայացմանը, որտեղ հանդես էր գալիս հայտնի դերասան Գևորգ Չմշկյանը: Սունդուկյանին շատ է դուր գալիս Ճամիրի տիպը և նրա մեջ միտք է ծագում, թե ինչպես կվարվեր Ճամիրը, եթե հարուստներից մեկը նրան փող պարտք լիներ և ուրանար: Պիեսի հիմքն արդեն դրված էր: Սունդուկյանին հայտնի էր նաև մեկ ուրիշ դեպք. Թբիլիսիի հարուստներից մեկը ուրացել էր իր խոսքը: Իր մտադրության մասին Սունդուկյանը պատմում է Չմշկյանին, որը շատ է ոգևորվում և խորհուրդ է տալիս անպայման գրել: Այնուհետև Չմշկյանը հաճախ լինում էր Սունդուկյանի մոտ, կարդում գրված էջերը, օգնում դրամատուրգին:

«Պեպոն» մեծ հաջողություն ու ժողովրդայնություն բերեց հեղինակին: Նա ինքն էլ շատ էր սիրում «Պեպոն» և միշտ գուրգուրանքով էր խոսում նրա մասին: Այդ էր պատճառը, որ մեռնելուց առաջ թողած կտակում Սունդուկյանն իր ձեռքով գրել է. «Ես չեմ ուզում, որ ինձ համար արձան կանգնեցնեն, թե ուզում են, թող Պեպոյի վրա արձան դնեն»:

Այսօր դժվար է գտնել մի դպրոցական, որը չիմանա Գաբրիել Սունդուկյանի անունը, չիմանա ու չսիրի նրա անմահ հերոսին՝ ձկնորս Պեպոյին, ժողովրդի ծոցից դուրս եկած այդ ազնիվ ու աշխատասեր մարդուն:

Անջնջելի տպավորություն են թողնում նաև Սունդուկյանի մյուս հերոսները:

Գաբրիել Սունդուկյանի անունը անխզելիորեն կապված է հայ թատրոնի պատմության հետ, իսկ նրա ստեղծած գեղեցիկ պիեսները երկար ժամանակ զարդարել ու դեռ էլի կզարդարեն մեր բեմերը: Դրա համար էլ այժմ սիրով ու երախտագիտությամբ է նշվում մեծ դրամատուրգի մահվան 50 տարին:

Մեր

